# Հ. Յ. Դ. ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ

*ՄԱՐՍԷՅԼ.— Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին*
Brébant Marseillaisի շքեղ սրահին մէջ, 146-148 Ave. de Chartreux
*առնել՝ Թիւ 41, 48 եւ 53 հանրակառքերը*
*կը խօսին՝ ընկերներ Ա. ՋԱՄԱԼԵԱՆ*
*Լ. ԳԵԽՈՆԵԱՆ եւ Հ. ՍԷՐԷՆԿԻՒԼԵԱՆ*
*Զինուորական փանֆառ, երգ, արտասանութիւն, նուագ եւն.։*
*Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ*

*ԼԻՈՆ.— Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին*
*Գ. Թաղապետարանի սրահը*
*կը նախագահէ ընկ. Ս. ԹԱԹՈՒԼ*
*կը խօսի՝ ընկ. Ա. ԱԲՕԵԱՆ*
*Բանախօսութիւն, երգ, արտասանութիւն։ կը մասնակցի Տէսինի «Կոմիտաս» երգչախումբը՝ ղեկավարութեամբ Ա. Մելքոնեանի։ Մանրամասնութիւնները յաջորդաբար։*
Մուտքը ազատ է

*ՓՈՆ ՏԸ ՇԷՐՐԻԽ.— Այս կիրակի ժամը 2.30ին*
*կը խօսի Ընկ. Ա. ԱԲՕԵԱՆ*

*ՍԷՆ ՇԱՄՕՆ.— Այս կիրակի ժամը 2.30ին*
*կը խօսի ընկ. ՀՐԱՆՏ - ՍԱՄՈՒԷԼ*

*ՍԷՆ Թ'ԷԹԻԷՆ.— Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին* Harmonie de St. Etienneի շքեղ սրահին մէջ, Ave. du Président Faure (սինէմա լուսայեալի կից).
*կը խօսի ընկ. Ս. ԹԱԹՈՒԼ*

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ԿՈՄԻՏԷԻ

*կազմակերպած դասախօսութիւնը, այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, Քաֆէ օ Քլէռ տը Լիւնի վերնայարկը, Մէթրօ Իթալի։*
*կը խօսի ընկ. Կ. ՍԱՍՈՒՆԻ նիւթ ունենալով*
քիւրտ ազատագրական պայքարը
եւ անոր քաղաքական նշանակութիւնը
*կը հրաւիրուին նաեւ շրջաններու ընկերները*

## ԴԵՐԱՍԱՆ Մ. ՄԱՐՈՒԹԵԱՆԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄՆԵՐԸ

*ՄԱՐՍԷՅԼ - ՍԷՆ - ԼՈՒ ԿՐԱՆ ՓԷՆ.— 5 Հոկտեմբեր կիրակի ժամը 2.30ին Պ. Ճանիկեանի «Կիլիկիա» Թատերասրահը։*
*կը ներկայացուի՝* ԵՂԲԱՅՐ ԵՂԲՕՐ ԴԷՄ *կամ* ԽԱՒԱՐԻ ՄԷՋԷՆ
*կը մասնակցի մարսիլահայ Տրամաթիք Ստուտիայի խումբը*

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ԱՆԻԷՌ ՊՈՒԱ ՔՈԼՈՆՊԻ ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ Եօզ. եւ Շրջ. Հայր. Միութեան Անիէռի մասնաճիւղին։ Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30էն մինչեւ լոյս, Թաղապետական սրահներուն մէջ, Բիւ տէ Հալ, Պուա Քոլոնպ։ Առաջին անգամ ըլլալով եւ մեծ պատրաստութեամբ Արօվեան Թատերախումբը կը ներկայացնէ՝*
ՓԱՌՆԱԲԱՍԻՆ ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆԸ
*(Քոմէտի երեք արար)*
*կը մասնակցին Տիկ. Պետիկ, Պ. Գազանճեան եւ Սմսարեան*
*Բանախօսութիւն, նուագ եւ արտասանութիւն*
*կը մասնակցի ԵՓՐԱՏ նուագախումբը*
Հասոյթը ամբողջութեամբ պիտի յատկացուի հիւանդ երիտասարդի մը։ ընտիր ճաշ. պիւֆէ ժողովրդական գիներով։
*Մուտք 5 եւ 10 ֆրանք*
*ԾԱՆՕԹ.— Այն հայրենակիցները որոնք օգոստոս 16ին տոմսեր գնած էին, անոնց մուտքը ապահովուած է։*

## Հ. Յ. Դ.

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ Պատ. միութեան ընդհ. անդամական ժողովը՝ այս Հինգշաբթի իրիկուն ժամը 8ին Գրադարանի սրահը, բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

*ՄԱՐՍԷՅԼԻ Պատ. Միութեան ընդհ. ժողովը տեղի կ'ունենայ այս Շաբաթ, 4 հոկտ. երեկոյեան ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին։ Ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ, ներկայանալ անդամատետրներով։*

*ՎԱԼԱՆՍԻ «Բաբգէն Սիւնի» ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, այս հինգշաբթի երեկոյ ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին։ Խիստ կարեւոր օրակարգ։ Ներկայանալ անդամատետրներով։*

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի Մասնաճիւղին դասախօսական ժողովը այս հինգշաբթի երեկոյ ժամը 9ին, Ֆլորիայի մէջ։ Կը դասախօսէ բժ. Շ. Այվազեան* Առողջապահութեան հարցը եւ առողջութեան... ցնորքը» *նիւթին մասին։*
*Մէկ ժամ սինէմա։*

*ԼԻՈՆԻ Բալուի եւ Յար. գիւղերու օգ. մարմինը համաբալուցիական ընդհանուր ժողովի կը հրաւիրէ անգամ եւ ոչ անգամ բոլոր հայրենակիցները 3 հոկտ. 1930 ուրբաթ երեկոյեան ժամը 8ին* (281, cours Lafayette, Lyon,



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*— Կը փնտռուի Կարօ Կարպուշեան որ կը բնակէր 20* rue des Feuillants, Marseille. *Իմացնել՝ «Յառաջ»ի վարչութեան։*



## ՄՇԱԿՈՅԹԻ ՕՐԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ

*Նախաձեռնութեամբ Զ. Ե. Ո. ՄԻՈՒԹԵԱՆ*
*Մասնակցութեամբ Ազգ. Միութիւններու*
11 Հոկտ. Շբ. իրիկուն Salle de Géographie մէջ, 184 bld. St. Germain
*կը նախագահէ Պ. ԵՐՈՒԱՆԴ ՏԷՐ ԱՆԴՐԷԱՍԵԱՆ*
գեղարուեստական բաժնին մանրամասնութիւնը յաջորդաբար

## "ԱՄԵՆՈՒՆ ՀԱՍՑԷՆ„

### ԲՈԼՈՐ ՀԱՅԵՐՈՒՆ ԵՒ ԳՈՐԾԻ ՏԷՐԵՐՈՒՆ

*Յառաջիկայ Նոր Տարիին լոյս պիտի ընծայենք Հասցէագիրք մը, «Ամէնուն Հասցէն» անունով, հայկական մանրանկար «Պոթէն» մը, ուր պիտի տանք Ֆրանսա բնակող Հայերու հասցէները, ինչպէս նաեւ Հայերուն համար օգտակար օտար հասցէները։ Կը խնդրուի ուրեմն որ, ֆրանսաբնակ ամէն հայ մեզի հաղորդէ, նամակով մը, իր անունը, մականունը, գործը կամ արհեստը եւ ամբողջական հասցէն (փողոցին թիւը եւ անունը, քաղաքը եւ նահանգը, ինչպէս նաեւ հեռաձայնի թիւը եթէ ունի), բոլորը գրուած որոշ ու յստակ։ Այս անուններն ու հասցէները պիտի հրատարակուին առանց ոեւէ փոխարինութեան, ձրիօրէն։*

*Անկէ զատ, այս գիրքին մէջ ծանուցում տալ փափաքող գործի տէր Հայերէն կը խնդրուի անյապաղ մեզի դիմել, ուղելով մեր ծանուցման սակագինը։ Պէտք է հասցէներն ու ծանուցումները մեզի հասնին մինչեւ Սեպտեմբերի վերջը։*

դիմել հետեւեալ հասցէին.— Librairie «Arpi», L. Mozian, 5 Rue Champlain, Paris (20)։

## ՖՐԱՆՍԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐՈՒ ՀԱՅ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ

*ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ ԳՐԱՏՈՒՆԸ, դպրոցական վերամուտի առթիւ, նպաստաւոր պայմաններով ֆրանսերէն ամէն տեսակ դասագիրքեր կը հայթայթէ հայ աշակերտներուն։*

*Գրատան մէջ կան* Larousseի, Hachetteի, A. Colinի, A. Michelի *եւ ֆրանսական բոլոր մեծ տուներու հրատարակութեանց ճոխ մթերք մը։*

*Լոյս տեսաւ* Larousseի *1931ի բառարանը, գին 34 ֆրանք։ Մասնավճարներով կը հայթայթենք Լարուսի բոլոր հրատարակութիւնները (*Larousse du XXe siècle, Larousse Médical, Commercial, Universel *եւայլն։*

*Պահանջուած ամէն գիրք կը հայթայթենք անմիջապէս։*

*Գաւառի եւ արտասահմանի դպրոցներն ալ կրնան դիմել մեզ* Librairie H. Samuel, 51 Rue Monsieur le-Prince, Paris (5). Tél. Danton 88-65, Métro Odéon.













IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN







պալքանեան ժողովուրդներու մերձեցման փորձերուն, ցոյց տալով պատճառները, որոնք կը պարտադրեն գէթ միայնտնտեսական գետնի վրայ պալքանեան երկիրներու գործակցութիւնն ու համերաշխութիւնը։ Թերթը կը հաւատայ թէ, հակառակ զանազան դժուարութիւններու, քիչ մը փափկանկատութեամբ և բարեացակամութեամբ, պատուիրակները պիտի կրնան ստեղծել յարաբերութիւններ, որոնք հիմը պիտի կազմեն պալքանեան ապագայ շէնքին։

Սոֆիայէն կը հեռագրեն թէ, լսելէ յետոյ պալքանեան խորհրդաժողովի կազմակերպման յանձնախումբի Նախագահ՝ Փափանաստասիայի բացատրութիւնները, պուլկար պատուիրակութիւնը որոշեց, հակառակ իր նախկին մտադրութեան, Աթէնք երթալ եւ մասնակցիլ խորհրդաժողովին։

## Աշխարհի խաղաղութիւնը կինէրը պիտի տան

«Ժուրնալ տը Ժընեւ» կը գրէ թէ Ազգերու Դաշնակցութեան մայրաքաղաքին մէջ վերջերս կազմուեցաւ մասնաւոր կոմիտէ մը, հաղորդակցութեան մէջ դնելու համար կնոջական ընկերակցութիւնները, որոնք կը հաշուեն 40 միլիոն անդամուհիներ, 56 երկիրներու մէջ ցրուած։

Այս կոմիտէին առաջին գործն եղաւ կոչ մը ուղղել աշխարհի բոլոր պետական մարդոց, պահպանելու համար աշխարհի խաղաղութիւնը։ Յետոյ մասնաւոր պատուիրակութիւն մը ներկայացաւ Թիթուլէսքոյի, Պրիանի, Քուրթիուսի, Հէնտըրսընի, միշտ ի խնդիր խաղաղութեան։ Այս վերջինը կիներուն պատասխանեց թէ համոզուած է, որ մեծ կարեւորութիւն ունի կնոջ շարժումը աշխարհի խաղաղութեան պահպանման հարցին մէջ։ Եւ հրաւիրեց կնոջական բոլոր ընկերակցութիւնները, հանրային կարծիքին վրայ ազդեցութիւն գործելով, նպաստել զինաթափութեան համաժողովին յաջողելքին։

# Հ. Յ. Դ. ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ

*ՄԱՐՍԷՅԼ.— Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին* Brébant Marseillaisի շքեղ սրահին մէջ, 146-148 Ave. de Chartreux *առնել՝ թիւ 41, 48 եւ 53 հանրակառքերը*

*կը խօսին՝ ընկերներ Ա. ՋԱՄԱԼԵԱՆ Լ. ԳԵԽՈՆԵԱՆ եւ Հ. ՍԷՐԷՆԿԻՒԼԵԱՆ*

*Ջինուորական ֆանֆառ, երգ, արտասանութիւն, նուագ եւն.։ Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ*

*ԼԻՈՆ.— Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին Գ. Թաղապետարանի սրահը*

*կը նախագահէ ընկ. Ս. ԹԱԹՈՒԼ*

*կը խօսի՝ ընկ. Ա. ԱԲՕԵԱՆ*

*Բանախօսութիւն, երգ, արտասանութիւն։ կը մասնակցի Տէսինի «Կոմիտաս» երգչախումբը՝ ղեկավարութեամբ Ա. Մելքոնեանի։ Մանրամասնութիւնները յաջորդաբար։*

Մուտքը ազատ է

*ՓՈՆ ՏԸ ՇԷՐՐԻՒԻ.— Այս կիրակի ժամը 2.30ին կը խօսի Ընկ. Ա. ԱԲՕԵԱՆ*

*ՍԷՆ ՇԱՄՕՆ.— Այս կիրակի ժամը 2.30ին կը խօսի ընկ. ՀՐԱՆՏ - ՍԱՄՈՒԷԼ*

*ՍԷՆ Թ'ԷԹԻԷՆ.— Այս կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին* Harmonie de St. Etienneի շքեղ սրահին մէջ, Ave. du Président Faure (սինէմա լուսայեալի կից).

*կը խօսի ընկ. Ս. ԹԱԹՈՒԼ*

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ՓԱՐԻԶԻ ԿՈՄԻՏԷԻ

*կազմակերպած դասախօսութիւնը, այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, Քաֆէ օ Քլէռ տը Լիւնի վերնայարկը, Մէթրօ Իթալի։*

*կը խօսի ընկ. Կ. ՍԱՍՈՒՆԻ նիւթ ունենալով*

Քիւրտ ազատագրական պայքարը եւ անոր քաղաքական նշանակութիւնը

*կը հրաւիրուին նաեւ շրջաններու ընկերները*

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ԵՐԵԿՈՅԹ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ ԱՆԻԷՌ ՊՈՒԱ ՔՈԼՈՆՊԻ ՄԷՋ

*Նախաձեռնութեամբ Եօզ. եւ Շրջ. Հայր. Միութեան Անիէռի մասնաճիւղին։ Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30էն մինչեւ լոյս, Թաղապետական սրահներուն մէջ, Րիւ տէ Հալ, Պուա Քոլոնպ։ Առաջին անգամ ըլլալով եւ մեծ պատրաստութեամբ Արովեան Թատերախումբը կը ներկայացնէ՝*

ՓԱՌՆԱԲԱՍԻՆ ԱՄՈՒՍՆՈՒԹԻՒՆԸ

*(Քոմէտի երեք արար)*

*կը մասնակցին Տիկ. Պետիկ, Պ. Գազանճեան եւ Սմսարեան*

*Բանախօսութիւն, նուագ եւ արտասանութիւն*

*կը մասնակցի ԵՓՐԱՏ նուագախումբը*

Հասոյթը ամբողջութեամբ պիտի յատկացուի հիւանդ երիտասարդի մը։ ընտիր ճաշ, պիւֆէ ժողովրդական գիներով։

*Մուտք 5 եւ 10 ֆրանք*

*ԾԱՆՕԹ.— Այն հայրենակիցները որոնք օգոստոս 16ին տոմսեր գնած էին, անոնց մուտքը ապահովուած է։*



## ԼՈՅՍ ՏԵՍԱՒ



## ԴԵՐԱՍԱՆ Մ. ՄԱՐՈՒԹԵԱՆԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄՆԵՐԸ

*ՄԱՐՍԷՅԼ - ՍԷՆ - ԼՈՒ ԿՐԱՆ ՓԷՆ.— 5 Հոկտեմբեր կիր. ցերեկ ժամը 2.30ին Պ. Ճանիկեանի «Կիլիկիա» Թատերասրահը։*

*կը ներկայացուի՝* ԵՂԲԱՅՐ ԵՂԲՕՐ ԴԷՄ *կամ* ԽԱՒԱՐԻ ՄԷՋԷՆ

*կը մասնակցի մարսիլահայ Տրամաթիք Ստուտիայի խումբը*

# Հ. Յ. Դ.

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ Պատ. միութեան ընդհ. անդամական ժողովը՝ այսօր Հինգշաբթի իրիկուն ժամը 8ին գրադարանի սրահը։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

*ՄԱՐՍԷՅԼԻ Պատ. Միութեան ընդհ. ժողովը տեղի կ'ունենայ այս Շաբաթ, 4 հոկտ. երեկոյեան ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին։ Ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ, ներկայանալ անդամատետրներով։*

*ՎԱԼԱՆՍԻ «Բաբգէն Սիւնի» ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները, այսօր հինգշաբթի երեկոյ ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին։ Խիստ կարեւոր օրակարգ։ Ներկայանալ անդամատետրներով։*

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

*Ջ. Ե. Ո. Միութեան Փարիզի Մասնաճիւղին դասախօսական ժողովը այսօր հինգշաբթի երեկոյ ժամը 9ին, Ֆլորիայի մէջ։ Կը դասախօսէ բժ. Շ. Այվազեան* Առողջապահութեան հարցը եւ առողջութեան... *ցնորքը» նիւթին մասին։*

*Մէկ ժամ սինէմա։*

*ԼԻՈՆԻ Բալուի եւ Յար. գիւղերու օգ. մարմինը համաբալուցիական ընդհանուր ժողովի կը հրաւիրէ անդամ եւ ոչ անդամ բոլոր հայրենակիցները վաղը ուրբաթ երեկոյեան ժամը 8ին (281,* cours Lafayette, Lyon,


EMPIRE Միւզիք-Հոլ՝ 37 Av. Wagram

IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN




Այրի Տիկ. Արմենուհի Շիշմանեան, Այրի Տիկ. Մարիամ Գալբաքեան, Տէր եւ Տիկ. Արթին Գալբաքեան (Աթէնք), ինչպէս նաեւ Գալբաքեան, Թրաշեան, Թօփալեան, Պախթիյարեան ընտանիքները կը ծանուցանեն իրենց աղջկան, թոռան, քրոջ զաւկին եւ ազգականին դառնաղէտ մահը՝

### ՕՐ. ԶԱՊԷԼ ՇԻՇՄԱՆԵԱՆԻ

*(18 տարեկան)*

Յուղարկաւորութիւնը պիտի կատարուի 2 Հոկտ. Հինգշաբթի առաւօտ ժամը 9ին Հայոց եկեղեցին 15 Rue Jean Goujon Paris.

# Հ. Յ. Դ. ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ

*ՄԱՐՍԷՅԼ.—Այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին*
Brébant Marseillaisի շքեղ սրահին մէջ, 146-148 Ave. de Chartreux
*առնել՝ թիւ 41, 48 եւ 53 հանրակառքերը*
*կը խօսին՝ ընկերներ Ա. ՋԱՄԱԼԵԱՆ*
*Լ. ԳԵՒՈՆԵԱՆ եւ Հ. ՍԷՐԷՆԿԻՒԼԵԱՆ*
*Զինուորական փանֆառ, երգ, արտասանութիւն, նուագ եւն.։*
*Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ*

*ԼԻՈՆ.—Այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին*
*Գ. Թաղապետարանի սրահը*
*կը նախագահէ ընկ. Ս. ԹԱԹՈՒԼ*
*կը խօսի՝ ընկ. Ա. ԱԲՕԵԱՆ*
*Բանախօսութիւն, երգ, արտասանութիւն։ կը մասնակցի Տէսինի «կոմիտաս» երգչախումբը՝ ղեկավարութեամբ Ա. Մել-քոնեանի։ Մանրամասնութիւնները յաջորդաբար։*
Մուտքը ազատ է

*ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻԻ.— Վաղը կիրակի ժամը 2.30ին*
*կը խօսի Ընկ. Ա. ԳԱՌՕՆԷ*

*ՍԷՆ ՇԱՄՕՆ.— Վաղը կիրակի ժամը 2.30ին*
*Սալ տը Քօնֆէրանսի մէջ*
*կը խօսի ընկ. ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ*
*Հանդէսէն վերջ ընկերական ժողով, ներկայ կ'ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը։*

*ՍԷՆ Թ'ԷԹԻԷՆ.—Վաղը կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին* Harmonie de St. Etienneի շքեղ սրահին մէջ, Ave. du Président Faure (սինէմա Լուսյեալի կից).
*կը խօսի ընկ. Ս. ԹԱԹՈՒԼ*
*Հանդէսէն յետոյ ընկերական ժողով, ներկայ կ'ըլլայ Կ.Կ.ի ներկայացուցիչը։*

*ՏԷՍԻՆ.— կիրակի ժամը 5.30ին Սինէ՛մա Նովէլթի*
*կը խօսի՝ ընկ. Ա. ԱԲՕԵԱՆ*

*ԿԱՐՏԱՆ.— Վաղը կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Հ. Յ. Դ. Տան մէջ. մասնակցութեամբ Մարսէյլի կոմիտէին Արտասանութիւններ Գաբրիէլեանէ, Խանոյեանէ, Ուզունեանէ*
*կը խօսի՝ ընկ. Ա. ՋԱՄԱԼԵԱՆ*

## ԴԵՐԱՍԱՆ Մ. ՄԱՐՈՒԹԵԱՆԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄՆԵՐԸ

*ՄԱՐՍԷՅԼ-ՍԷՆ-ԼՈՒ ԿՐԱՆ ՓԷՆ.— 5 Հոկտեմբեր կիր. ցերեկ ժամը 2.30ին Պ. Ճանիկեանի «Կիլիկիա» թատերասրահը։*
*կը ներկայացուի՝* ԵՂԲԱՅՐ ԵՂԲՕՐ ԴԷՄ *կամ* ԽԱՒԱՐԻ ՄԷՋԷՆ
*կը մասնակցի մարսիլահայ Տրամաթիք Ստուտիայի խումբը*

## Հ. Յ. Դ.

*ԳԱՒԱՌ*

*ՄԱՐՍԷՅԼԻ Պատ. Միութեան ընդհ. ժողովը տեղի կ'ունենայ վաղը Կիրակի 5 Հոկտ. երեկոյեան ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին։ Ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ, ներկայանալ անդամատետրներով։*

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ՏՐԱՊԻԶՈՆԻ Հայր. Միութեան ընդհ. ժողովը տեղի կ'ունենայ այսօր շաբաթ իրիկուն ժամը 9ին Ֆլօրիայի սրահին մէջ։

ՏԱՐՕՆ ՏՈՒՐՈՒԲԵՐԱՆԻ Հայր. Միութեան Տէսինի մասնաճիւղի ընդհ. անդամական ժողովը վաղը կիրակի ժամը 2ին Քաֆէ Բէնզօնի ներքնայարկը. Ներկաներու թիւը մեծամասնութիւն կը համարուի։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— *Կը փնտռուի Կարօ Կարապուշեան որ կը բնակէր 20* rue des Feuillants, Marseille. *Իմացնել՝ «Յառաջ»ի վարչութեան։*

—Կը փնտռեմ եղբայրս Օհաննէս Տէմիրճեանը (եօզղատի Գաբալըլըգ գիւղէն) որ 1917ին կը գտնուէր իր հօր Մկրտիչ Տէմիրճեանի հետ կեսարիա։ Հօրս մահէն վերջ լուր մը չունիմ, իր մասին. ստոյգ տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի իմացնել իր եղբօր Մարտիրոս կամ Յովսէփ Տէմիրճեանի, 13, Rue des Dominicains Marseille. կը խնդրուի արտասահմանի թերթերէն արտատպել։



Le Gérant H STEPHAN

LE SEUL QUOTIDIEN ARMÉNIEN EN EUROPE

# ՅԱՌԱՋ

| ԲԱԺՆԵԳԻՆ | 3 ամս. | 6 ամս. | Տար. |
|---|---|---|---|
| ՖՐԱՆՍԱ | 35 ֆ. | 70ֆ. | 140ֆ. |
| ԱՆԳԼԻԱ | | 20 շլ. | 40 շլ. |
| ԵԳԻՊՏՈՍ | | » | » |
| ԻՏԱԼԻԱ | | | 250 ֆրանք |
| ԱՄԵՐԻԿԱ | | 6 տլ. | 10 տլ. |
| ԵԻՐՈՊԱ | | 100 ֆ. | 200ֆ. |

"HARATCH"

Directeur-Propriétaire SCH. MISSAKIAN
Խմբագիր՝ Շ. ՄԻՍԱՔԵԱՆ

Rédaction et Administration
Խմբագրութիւն եւ Վարչութիւն
235, Faub. St.-Martin
PARIS (10e)

MÉTRO : LOUIS-BLANC OU JAURÈS
Téléphone : NORD 67-23
R. C. SEINE 376.286

Հասցէի փոփոխութեան համար պէտք է վճարել 3 ֆրանք

ԿԻՐԱԿԻ 5 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1930
5 OCTOBRE 1930

Զ. ՏԱՐԻ ԹԻՒ 1383

ՕՐԱԹԵՐԹ ԱԶԳԱՅԻՆ, ՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՒ ԳՐԱԿԱՆ

ԳԻՆ՝ 50 ՍԱՆԹԻՄ

ԵՐԿՈՒ ԽՕՍՔ

## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆԸ

### (ԾՆՈՒՆԴԸ)

Երկնէ՛ր երկին եւ երկիր,
Երկնէր ե՛ւ ծիրանի ծով...

1890ի աշնան, հայ քաղաքական մտքի յանդուգն ու կորովի ներկայացուցիչները հիմքը կը դնէին «Հայ Յեղափոխականների Դաշնակցութեան», ծնունդ տալով, վերջապէս, այն մարտիկին, որ քառասուն տարի անընդհատ ազատութեան ձայնը պիտի հնչեցնէր գետնատարած հայ իրականութեան մէջ:

Հրաշք ծնունդ մը, որ յարութիւնն էր փոշիացած ցեղին: Ու դժնդակ կեանք մը, որ անսահման զոհողութեան եւ զմայլելի ազատամարտներու ժառանգութիւնը պիտի բերէր մեր օրերու սերունդին:

Վերջին դարերու Հայոց պատմութեան քաղաքական ամէնէն մեծարժէք երեւոյթն է Դաշնակցութեան ծնունդը եւ կեանքը: Քառասուն տարուան շէմին կանգնած՝ ժառանգորդ այս անցեալի մեծագործութիւններուն, անհաշիւ զոհողութիւններուն եւ բարոյական մեծ դրամագլուխին, հայ ժողովուրդը, պահ մը պիտի կենայ, չափէ ու կշռէ արժէքն ու ծանրութիւնն այն մեծ իրողութեան, որ հայ յեղափոխութիւն կը կոչուի, որ փոթորիկի պէս եկաւ՝ բռնութեան գարշելի փոթորիկին դիմաց, որ անցաւ արեան ծովէն, ուժասպառ ու մինակ, կոտրակուեցաւ, բայց փոթորիկներէ մտրակուած՝ քալեց, միշտ քալեց՝ ազատութեան դռներուն հասնելու համար:

Քանի մը կիրակնօրեայ զրոյցներ հայ ժողովուրդին եւ մանաւորապէս՝ նոր սերունդին հետ, նոր սերունդը որ նոր հորիզոններ պիտի կտրէ անցնի՝ միշտ ի խնդիր ազատութեան:

Պատմութիւնը:

Հ. Յ. Դաշնակցութեան ծնունդը տեղի ունեցաւ երկար երկունքէ յետոյ, երբ քաղաքական միտքը հասունցած էր, բայց ազգը ֆիզիքապէս անուժ բազմութիւն մը կը ներկայացնէր, մեծ մասը ստրուկ ու ճակատագրապաշտ: Թաթարական մարախը երկար դարեր նստած էր հայ ժողովուրդի կուրծքին, պատմութիւնը թաւալած էր մշտատեւ խաւարի մէջէն, ու բռնութեան փոշին հազար տարի խաւ առ խաւ նստած էր մեր ժողովուրդի հոգիին վրայ, ազատութեան բոլոր նշոյլները մարեցնելով: Այդ անհուն խաւարի մէջէն, երբեմն երբեմն լոյսեր պլպլացին, ու քաօսին մէջ ճապղեցան: Հայ ազգը հաւաքաբար, ու հայ մարդը անհատաբար՝ շուք դարձան, միայն հին յուշարձաններու առջեւ մոմ վառելով: Բայց փոշիին տակ անթեղուած մնաց կրակի կտորը մեր պապերուն, անմար կրակը ազատ ու անկախ ապրելու, նորէն՝ հին օրերուն պէս:

Այո՛, Հայաստանի օջախներու հին եւ աւանդական սովորութեամբ, թանձր փոշիին տակ անմար մնաց ազատութեան կրակը: Ու այնքան երկար, որ կարծուեցաւ թէ վերջին կայծերն ալ մարած են: Սակայն հայ ժողովուրդը բռնուեցաւ վերածնունդի տաժանելի երկունքէ մը, քամուած իր կողերը պրկեց, ցամքած աւիշին վերջին կաթիլը քամեց, անժառանգ մօր մը հեւքով ցնցուեցաւ՝ ապրելու եւ ժառանգ մը ապագային յանձնելու համար: Վերածնունդի տասնամեակներն իրարու յաջորդեցին: Հայ ժողովուրդի ընտիր զաւակները փոշիի կարծրացած խաւերը փշրեցին, անկարելիի դէմ պայքարեցան, խաւար մթնոլորտի մէջ ճեղք մը բացին, ու տեսան որ դարաւոր անթեղուած կրակը կ'առկայծէր:

Հ. Յ. Դաշնակցութիւնն աշխարհ եկած էր հաւաքական երկունքէն, ջերմ ու հաւատաւոր մթնոլորտի մը մէջ:

Հայոց քաղաքական օջախը, քառասուն տարի առաջ, այս օրերուն, սկսաւ ջերմացնել հովերուն ցրուած բազմութիւնները, հիմքը դրաւ Հայ յեղափոխական ուժին, կամքերը կեդրոնացուց, եւ համազգային գաղափարի խարիսխը նետեց իրաւազուրկ ժողովուրդին մէջ, որ հակառակ անօրինակ թշուառութեան եւ ստրկութեան՝ մամուռ դարձած՝ կառչած մնացած էր Հայաստանի ժայռերուն, ու սերունդէ սերունդ աւանդած էր խորհրդաւոր ու անմար կրակը:

Հ. Յ. Դաշնակցութիւնը հրապարակ կուգար երեք հիմնական գաղափարներով:

Ա.— Ազատել հայ ժողովուրդը քաղաքական եւ տնտեսական գերութենէ, որով, հայոց ազատագրական գործը համազգային նպատակ մըն էր, որուն պիտի լծուէին բոլոր հայերն անխտիր: Ոչ ոք իրաւունք ունէր հրաժարելու այս սրբազան պարտականութենէն:

Բ.— Հայ ժողովուրդը պիտի կրնար տիրանալ իր ազատութեան, ամէնէն առաջ, յոյսը դնելով իր սեփական ուժին վրայ: Հետեւաբար պիտի զինուէր եւ յեղափոխութեան անողոք ճանապարհով՝ դիմէր դէպի իր վերջնական նպատակը:

Գ.— Ազատագրական անողոք պայքարը մղելու համար, անհրաժեշտ էր միացնել բոլոր յեղափոխական անհատները, խումբերը եւ հոսանքներն ու ստեղծել հայ ժողովուրդի կամքերու դաշնակցութիւն մը, մէկ նպատակով, մէկ կեդրոնով, որ պիտի ունենար միատեսակ եւ ծրագրուած շարժումներ:

Ահա, այս երեք հիմնական սկզբունքները որդեգրուեցան հայ քաղաքական ղեկավարներու կողմէ եւ հիմքը դրուեցաւ «Հայ Յեղափոխականների Դաշնակցութեան» որ տէր դարձաւ հայ ժողովուրդի քաղաքական օջախին:

Օրհնեա՛լ ծնունդ:

Կ. Ս.

## ՕՐԸ ՕՐԻՆ

### Քիւրտ հրոսախումբեր Պիթլիսի մէջ

Պիթլիսէն կը հաղորդեն թէ Ախլաթի ճամբուն վրայ Քիւրտերէ կազմուած հրոսախումբ մը յարձակում գործած է բեռնատար ու մարդատար երկու ինքնաշարժներու վրայ: Աւազակները Համիտ անուն շարժավարի մը ինքնաշարժին վրայ յարձակած են Սաքալ Թութան կոչուած տեղին մէջ: Ինքնաշարժը ամբողջ արագութեամբ փախչիլ սկսած է, իր ետեւէն քշելով բեռնատար ինքնաշարժ մըն ալ: Բաւական առաջանալէ վերջ, սակայն, ձորին մէջէն երեւան կ'ելլեն ուրիշ զինեալ ձիաւոր Քիւրտեր, որոնք առջեւէն գացող ձիապանները կողոպտած էին, եւ կը սկսին ինքնաշարժին ետեւէն իյնալ, անդադար կրակելով:

Ինքնաշարժները յաջողած են ազատել իրենց ճամբորդները. ճամբորդներէն մէկը ոտքէն վիրաւորուած է հրոսակներուն արձակած գնդակներէն: Վանի ոստիկան-զինուորները հետապնդելու ելած են:

.*. Մուշէն կը հաղորդեն թէ Ֆէրզէնտի անուն հրոսապետ մը, ամէն տարուան պէս աւարառութիւն ընելու համար երբ Թրքական սահմանը կ'անցնէր, սպաննուած է:

### Ֆրանսա եւ բոլշեւիկ. արտածումները

Նախարարաց խորհուրդին մէջ երէկ, առեւտրական եւ երկրագործական նախարարները ներկայացուցին հրովարտակ մը որ վաւերացուեցաւ եւ որուն համաձայն, ասկից վերջ, ռուսական ապրանքները, մասնաւորաբար արմտիք, միս, հաւկիթ, շաքար, փայտ, կտաւ, սոսինձ, եւայլն, չպիտի կրնան Ֆրանսա մտնել, առանց նախապէս ստացուած թոյլտուութեան:

Այս որոշման պատճառն այն է որ, շնորհիւ պարտադիր ու բռնի աշխատութեան եւ մանաւանդ օրինականացած բռնագրաւումներուն, Ռուսիա կրնայ արտածել ամէն տեսակ ապրանքներ, որ եւ է երկրի ապրանքներու արտադրութեան արժէքէն ալ աժան գիներով: Այս կերպով, Ռուսիա կը յուսայ համաշխարհային շուկային վրայ առաջ բերել գիներու մեծ տագնապ մը, որ օտար երկիրներու արտադրութեան կարողութիւնը ջլատելով, պիտի ստեղծէ նաեւ ընդհ. դժգոհութիւն եւ թերեւս յեղափոխութիւն: Այսպէս է որ կենտինարը (50 քիլօ) 60 ֆրանքէն, Ռուսիա կը ծախէ ուզուած քանակութեամբ ցորեն, գին մը որուն առջեւ ֆրանսական որ եւ է արտադրող չի կրնար տոկալ:

Բոլշեւիկներու այս տնտեսական յարձակման առջեւ, Ֆրանսա ուրեմն,ստիպուած կը դիմէ պաշտպանութեան այս միջոցին:

Ֆրանսայի առեւտրական նախարարը այս առթիւ մամուլի ներկայացուցիչներուն ըրաւ հետեւեալ յայտարարութիւնները:

— Նախ, պէտք է յայտնեմ թէ ներածումներուն դէմ արգելք մը չէ որ կը դնենք, այլ ռուսական արտածումներու վրայ, հսկողութեան միջոցներ է որ ձեռք կ'առնենք:

«1930ի առաջին վեց ամիսներուն, Ֆրանսա ներածուած է 441 միլիոն ֆրանքի խորհրդային ապրանքներ: Նոյն շրջանին սակայն, Ֆրանսայէն Ռուսիա մտած է ընդամէնը 119 միլիոն 627.000 ֆրանքի ապրանք: Այս կացութիւնը անընդունելի է, մանաւանդ որ Ռուսիա յաճախակի գնումներ կը կատարէ արտասահմանէն եւ շատ անգամ ֆրանսական դրամով է որ կը կատարէ իր վճարումները:

Կարգ մը ուրիշ բացատրութիւններէ յետոյ, նախարարը աւելցուց թէ տնտեսական պատերազմ չէ որ կը յայտարարուի Ռուսիոյ դէմ, այլ պարզապէս, խորհրդային առեւտրական գործունէութիւնն է որ Ֆրանսա կատարուած ներածումներու առթիւ հակակշռի կ'առնուի այս կերպով:

### Խորհրդային բանակին ռազմափորձերը

Շուէտական թերթ մը աշխարհի ուշադրութիւնը կը հրաւիրէ կարմիր բանակի ռազմափորձերուն բացառիկ կարեւորութեան վրայ, այն պատճառով որ այս ռազմափորձերու ընթացքին, կիրարկութեան կը դրուին խորհրդային պատերազմական նոր սկզբունքները որոնցմով, միանգամայն գործակցութիւնը կ'ապահովեն օդանաւերուն, թնդանօթաձգութեան, հետեւակ զօրքերուն եւ հրասայլերուն:

Ըստ խորհրդային սպայակոյտի հրահանգներուն, գործողութիւնները պէտք է կատարուին ապագայ պատերազմի պայմաններուն կանխատեսութեամբ: Ժողովուրդը պիտի շարժի, ինչպէս իսկական պատերազմի մը ընթացքին:

Բանուորական եւ գիւղացիական պատգամաւորներ պիտի հետեւին գործողութիւններուն: Օդանաւորդութեան բոլոր ստորաբաժանումները, օդային քիմիական պաշտպանութեան կամաւորական կազմակերպութիւնները, զօրակոչի պիտի ենթարկուին:

Շուէտական թերթը կը հաւաստէ թէ օդանաւային պաշտպանութեան յատուկ կատարեալ միջոցներ ունի Ռուսիա:

## Հ. Յ. Դ. ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԸ

## ՓԱՐԻԶԻ ՄԷՋ ԿԸ ՏՕՆՈՒԻ ՆՈՅԵՄԲԵՐ 16ԻՆ

ՄԻՈՒԹԻՒՆՆԵՐԷՆ ԿԸ ԽՆԴՐՈՒԻ ՆԿԱՏԻ ԱՌՆԵԼ ԹՈՒԱԿԱՆԸ

### Ըսմէթի դահլիճին շուրջ

ԷՆԿԻՒՐԻ, 3 հոկտ.— Բուռն վիճաբանութիւններէ վերջ, Թուրք Ազգ. ժողովը 12ի դէմ 149 ձայնով, վստահութիւն յայտնեց Ըսմէթի նոր դահլիճին:

Վիճաբանութեանց ընթացքին, Ֆէթհի հերքեց այն զրոյցները թէ ինքն ուժ պիտի տայ արտաքին պարտքերու վերաբերեալ համաձայնութեան կիրարկումին:

Ժողովէն յետոյ, Մուսթաֆա Քէմալ եւ «Ազգամ» թերթի տնօրէնը տեսակցութիւն մը ունեցան, Ըսմէթի եւ Ֆէթհիի ներկայութեան:

Մուսթաֆա Քէմալ կրկին յայտնեց «Ազգամ»ի տնօրէնին թէ, եթէ որեւէ առթիւ անհրաժեշտութիւն ծագի, ինքը պատրաստ է ստանձնելու վարչապետութիւնը, բայց այդ պարագային, պիտի հրաժարի հանրապետութեան նախագահութենէ: Այս երկու պաշտօններու միանգամայն ստանձնումը հակառակ ըլլալով իր հանրապետական սկզբունքներուն(?), չի կրնար Թուրքիոյ մէջ Ամերիկայի կառավարական վարչաձեւին կիրարկումն ընդունիլ:

### Թուրքիա տուրքերը կը զեղչէ

ԷՆԿԻՒՐԻ,— Խալքի վերջին նիստին, Ելմտական գործավարը պարզեց տուրքերու մասին իր ծրագրած բարեփոխումները: Ասոր վրայ սկսան վիճաբանութիւնները որոնք տակաւին կը շարունակուին: Առնուած տեղեկութեանց համաձայն, ժողովուրդին ի նպաստ հիմնական բարեփոխումներ պիտի կատարուին տուրքերու քանակին եւ գանձման ձեւին մէջ:

Կալուածահամարի օրէնքը, որ հինին ճիշդ հակառակն է, այս տարի 15 նահանգներու մէջ պիտի գործադրուի: Այս օրէնքին համաձայն, կալուածներու արժէքները նախ պիտի գնահատուին Ծերերու ժողովներուն եւ մուխթարներուն միջոցաւ: Ասոնց դէմ առարկելու իրաւունք պիտի ունենայ Ելմտական գործավարութիւնը:

Որոշուած է որ կալուածական («մուսաղգաֆաթ») տուրքերը 100էն 50 զեղչուին: Իսկ քաղաքներու մէջ գտնուող թափուր գետիններէն եւ ճախճախուտ տեղերէն տուրք չպիտի գանձուի.

Մինչեւ հիմա ամէնէն աւելի գանգատ կար տուրքերու քանակին ճշդման դէմ: Որոշուած է այս հարցին մէջ առաւելագոյն դիւրութիւնը տալ ժողովուրդին:

Միայն դրամատուններու ընկերութիւնները պարտաւոր պիտի ըլլան շահատուրքի յայտարարութիւն տալու: Միւս հաստատութեանց եւ վաճառատուններուն տուրքը պիտի ճշդուի մօտաւոր կերպով եւ համաձայն իրականացած հաշիւներու: Բայց եւ այնպէս այդ հաստատութիւնները կրնան նաեւ յայտագիր տալ:

### Արարատի սաւառնորդներուն համար

ԷՆԿԻՒՐԻ, 29 (Ա. Գ.)— Վերջին տեղեկութեանց համաձայն, Արեւելեան վերջին դէպքերու ընթացքին նահատակուած սաւառնորդներուն գերեզմանները պիտի ամփոփուին մէկ տեղ, եւ Գարաքէօսէի մէջ յիշատակարան մը պիտի կանգնուի:

### ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ԵՐԿԱԹՈՒՂԻԻ ԾԱՆՐ ԱՐԿԱԾ.— Երկաթուղիի ծանր արկած մը, որ կրնար մեծ աղէտի մը վերածուիլ, պատահեցաւ Ուրբաթ իրիկուն Փարիզ. Սէն Լազարի կայարանին մուտքին վրայ, Պարտինէյի կամուրջին տակ: Մեծ արուարձաններու սպասարկութեան յատուկ կառախումբ մը, որ կը մեկնէր դէպի Մանթ, զարնուեցաւ պարապ կառախումբի մը: Բախումը սաստիկ եղաւ: Շոգեշարժին առաջքի մասը ամբողջովին քանդուեցաւ, անոր կռնակի թղթատար կառքը փշրուեցաւ, իսկ անոր յաջորդ վակոնը, որ ճամբորդներով լեցուն էր, ելաւ բեկորներուն վրայ: Ճամբորդներն սկսած էին սարսափահար դուրս թափիլ, երբ նոյն պահուն, Հուլյէն Սէն-Լազար եկող կառախումբը վրայ հասաւ, իր կարգին փշրելով վտանգուած կառախումբին բեկորները, որոնք ինկեր էին իր ճամբուն վրայ, եւ ճզմելով երկու զոհեր:

Ընդհ. զոհերու թիւն է 4 մեռեալ, 24 վիրաւոր:

ԵՐԿՐԱՇԱՐԺ ՊԱՐՍԿԱՍՏԱՆԻ ՄԷՋ.— Առջի առտու նոր ցնցում մը տեղի ունեցաւ Թէհրանէն 60 քիլոմեդր հեռու Դամավէնտի շրջակայքը. մեծ վնասներ կան: Բայց մանրամասնութիւնները կը պակսին:

ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՊՏՈՅՏՆԵՐ.— Բոլշեւիկեան նաւային փոքր տորմիղ մը որ կը բաղկանայ մէկ յածանաւէ եւ երկու թորփիլահալածներէ, հասաւ Պոլիս, ուր պիտի մնայ երկու օր, յետոյ պիտի մեկնի դէպի Պիրէօս եւ Մեսինա:

ՎԵՍՈՒՎԻ ԲՈՐԲՈՔՈՒՄԸ.— Վեսուվի դիտարանէն կը հաղորդեն թէ փոքր խառնարանին հիւսիսային խարիսխին վրայ բացուած ճեղքուածքէն, լաւան կը հոսի աւելի առատ վերջին 24 ժամերու ընթացքին: Լաւայի ալիքներն սկսած են իջնալ դէպի Դժոխքի հովիտը: Խառնարանին մօտ լաւայի հոսանքին լայնութիւնն է վեց մեդր եւ վայրկեանը չորս մեդր արագութեամբ կը հոսի: Կրակի բերնին տրամագիծն է մօտ 30 մեդր: Շրջակայ բնակչութեան համար անմիջական որեւէ վտանգ չկայ:

ՊԵՐԼԻՆԻ ՌՈՒՍ ԴԵՍՊԱՆԸ.— Պերլինի բոլշեւիկեան դեսպան նշանակուեցաւ Լէոն Քէնչուք, խորհրդային առեւտրական գործավարին արդի օգնականը, որ նախապէս եղեր էր Լոնտոնի խորհրդային առեւտրական ներկայացուցիչ մինչեւ 1926:

# Հ. Յ. Դ. ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ

*ՏԷՍԻՆ.— Այսօր կիրակի ժամը 5.30ին Սինէմա Նովէլթի կը խօսի՝ ընկ. Ա. ԱԲՕԵԱՆ*

*ԿԱՐՏԱՆ.— Այսօր կիրակի կէսօրէ վերջ, ժամը 3ին, Հ. Յ. Դ. Տան մէջ. մասնակցութեամբ Մարսէյլի կոմիտէին Արտասանութիւններ Գաբրիէլեանէ, Խանոյեանէ, Ուզունեանէ կը խօսի՝ ընկ. Ա. ՋԱՄԱԼԵԱՆ*

*ՓՈՆ ՏԸ ՇԷՐԻԻ.— Այսօր կիրակի ժամը 2.30ին կը խօսի Ընկ. Ա. ԳԱՌՕՆԷ*

*ՍԷՆ ՇԱՄՕՆ.— Այսօր կիրակի ժամը 2.30ին Սալ տը Քօնֆէրանսի մէջ կը խօսի ընկ. ՀՐԱՆՏ ՍԱՄՈՒԷԼ*

*Հանդէսէն վերջ ընկերական ժողով, ներկայ կ'ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը։*

*ՍԷՆ Թ'ԷԹԻԷՆ.— Այսօր կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին* Harmonie de St. Etienneի շքեղ սրահին մէջ, Ave. du Président Faure (սինէմա լուսայեալի կից).
*կը խօսի ընկ. Ս. ԹԱԹՈՒԼ*

*Հանդէսէն յետոյ ընկերական ժողով, ներկայ կ'ըլլայ Կ.Կ.ի ներկայացուցիչը։*

---



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

# Օդանաւային զարհուրելի աղէտ մը

## ՆԱԽԱՐԱՐ ՄԸ ԵՒ 48 ԱՆՁԵՐ ԱԾԽԱՑԱԾ

Օդանաւային զարհուրելի աղէտ մը սուգի մատնած է Անգլիան։ «Ռ—101» անգլիական ղեկաւորը որ առջի իրիկուն ժամը 19.30ին մեկներ էր Քարտինկթոնի իր կայանէն դէպի Հնդկաստան ուղեւորութեան մը համար, գիշերուան ժամը 2.10ին փճացաւ ֆրանսական հողի վրայ, Պօվէէն 6 քիլոմեդր հեռու։

Պօվէյի օդանաւային կայանին պահնորդը կը պատմէ թէ իր ուշադրութիւնը գրաւած էր օդանաւին շարժիչ մեքենաներուն աղմուկը։ Այդ պահուն, օդանաւը կը յառաջանար բոլոր լոյսերը վառած, գեղատեսիլ աստուպի մը պէս, երբ յանկարծ մեծ բոց մը բարձրացաւ։ Օդանաւը կրակ էր առած ու կ'իյնար գետին, պայթումով ու բոցերու մէջ։ Շրջակայքի բնակիչները որ լսեր էին օդանաւին աղմուկը եւ պայթիւնն ու տեսեր բոցերը, անմիջապէս կը փութային օգնութեան, բայց արդէն շատ ուշ էր։

Բոցերու մէջ, ամբողջ կազմածը փճացեր էր։ Միայն կարելի եղաւ առաջամասի նաւակին ութը ճամբորդները փրկել, անոնք այրուցքներ ստանալէ վերջ սակայն։ Անոնց երկուքն ալ մեռան հիւանդանոցին մէջ։

Երբ բոցերը մարեցան, օդանաւին բեկորներէն կարելի եղաւ դուրս քաշել 49 ածխացած դիակներ, որոնց մէջ է Լորտ Թոմսըն՝ Անգլիոյ օդանաւային նախարարը, ինչպէս նաեւ քաղաքային օդանաւորդութեան տնօրէնը։

Աղէտին բուն պատճառները դեռ անյայտ կը մնան։

## Ռումանիոյ դահլիճի տագնապը

Քաղաքական տագնապը որ երկար ատենէ ի վեր կը տեւէ Ռումանիոյ մէջ, այս օրերս աւելի սաստկացաւ։ Ռումէն ճարտարարուեստի նախարարը որ Փարիզ եկեր էր փոխառութեան մը մասին բանակցելու եւ ուր պիտի մնար 10 օրուան չափ, փութով Պուքրէշ կանչուեցաւ։

Պուքրէշի մէջ զրոյց կը շրջի թէ մօտ ատենէն պիտի կազմուի ազգ. գիւղացիական նախարարութիւն մը որ փոխանցման շրջան մը միայն պիտի բոլորէ, եւ որմէ վերջ պիտի կազմուի համերաշխական եւ ազգ. միութեան դահլիճ մը, գլխաւորութեամբ Թիթուլէսքոյի։

## Պալքանեան խորհրդաժողովը

Կիրակի օր, Աթէնքի մէջ բացումը կատարուեցաւ Պալքանեան խորհրդաժողովին։ Նախագահ Պ. Փափանասթասիու երկար ճառով մը ըսաւ.— Պալքանեան ժողովուրդները որ միւս ժողովուրդներէն աւելի կրած են մահացու եւ կատաղի կռիւներու վնասները եւ անոնցմէ աւելի, պատերազմի քաննիչ ուժին փորձառութիւնն ունին, հանդարտութիւն կ'ուզեն, որպէսզի իրենց բոլոր ուժերը կարենան կեդրոնացնել, բարելաւելու համար իրենց վիճակը։ Միութիւնը միմիայն պիտի կրնայ զանոնք փրկել տագնապէն, որ կը ճնշէ երկրագործ եւայլ դասակարգերը»։

Նախագահէն յետոյ, կարգաւ խօսք առին Վէնիզէլոս, Ռումանիոյ, Թուրքիոյ, Եուկօսլաւիոյ ներկայացուցիչները, ինչպէս նաեւ Ազգերու Դաշնակցութեան կողմէ Պ. Ուալթըր։

Յանձնախումբերն արդէն աշխատանքի սկսած են։

## Գերմանական հսկայ ցոյց մը

ՊԵՐԼԻՆ, 5 հոկտեմբեր.— Երէկ եւ այսօր, մեծ ցոյցեր տեղի ունեցան Գօպլէնցի մէջ, «Պողպատեայ Սաղաւարտներ»ու կողմէ։ Հարիւր քսան հազար անձեր համախմբուեր էին, վեց հազար դրօշներով։

Վիթխարի զօրանցք մը տեղի ունեցաւ։ Զօրանցքին կը մասնակցէին նաեւ 3800 ինքնաշարժներ զարդարուած ազգային գոյներով՝ սեւ, ճերմակ, կարմիր։ Այս ցոյցին կը մասնակցէին 15 զօրավարներ։ Յատուկ բեմի մը վրայէն, գործողութիւններուն կը հետեւէր զօրավար Ֆոն Սէքթ ընդհանուր սպայակոյտի նախկին պետը։

Դեռ թափօրը չշարժած, կազմակերպութեան պետը, ճառով մը յայտարարեց.—«Պողպատեայ Սաղաւարտները» չպիտի դադրին պայքարելէ, մինչեւ վերաքննութիւնը ամօթալի դաշնագրերուն, որոնք մեզի պարտադրուեցան, մինչեւ որ Գերմանիա վերստանայ իր զինուորական վեհապետութիւնը»։

Ճառախօսը պահանջեց նաեւ որ Փրուսիոյ մէջ հաստատուի ազգայնական կառավարութիւն մը։ Ճառէն վերջ 120 հազարնոց այս բազմութիւնը թնդացուց կայսերական երգը և երդում տուաւ իր բոլոր ուժերը տրամադրել «ազատութեան պայքարին»։

Գերմանիոյ նախկին գահաժառանգը, Վիլհէլմ Բ.ի անդրանիկը ներկայ էր ցոյցերուն։ Կ'ըսուի թէ ան պատուոյ անդամ արձանագրուած է «Պողպատեայ Սաղաւարտներուն»։



# ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՕՐԸ

## ԿԸ ՏՕՆՈՒԻ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Զ. Ե. Ո. ՄԻՈՒԹԵԱՆ

11 Հոկտ. Շբ. իրիկուն Salle de Géographie մէջ, 184 bld. St-Germain

կը նախագահէ Պ. ԵՐՈՒԱՆԴ ՏԷՐ ԱՆԴՐԷԱՍԵԱՆ

կը խօսին ՌԷՆ. ՕՀԱՆ ՆԱՐՕ

Ուղերձ մը Ուրֆայի Հայրենակց. միութեան կողմէ

Գեղարուեստական ճոխ բաժին, մասնակցութեամբ հայ եւ օտար արուեստագէտներու։ (Մանրամասնութիւնը յաջորդով)։ Կը մասնակցի նաեւ ՍԻՓԱՆ երգչախումբը, ղեկավարութեամբ Սաքօ Յակոբեանի։

ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ.— Զ. Ե. Ո. Միութեան Մարսիլիոյ մասնաճիւղը նախաձեռնարկ եղած է տօնելու համարՀայՄշակոյթի Օրը Մարսիլիոյ մէջ, 25 Հոկտեմբեր Շաբաթ իրիկուն Սալոն Շափի մէջ։ Կը խնդրուի նկատի ունենալ այս թուականը։

## ԴԵՐԱՍԱՆ Մ. ՄԱՐՈՒԹԵԱՆԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄՆԵՐԸ

ԿՐԸՆՈՊԼԸ.— 12 Հոկտեմբեր կիրակի ժամը 2.30ին։ կը ներկայացուի՝ ՊԱՆՔ ՕԹՕՄԱՆԻ ԳՐԱՒՈՒՄԸ կամ ՍՈՒԼԹԱՆ ՀԱՄԻՏ

Ն. Գ. Բ. — ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ԱՐՁԱԿ ԷՋԵՐ ԵՒ ՀԷՔԵԱԹՆԵՐ

ՌՈՒԲԷՆ ԶԱՐԴԱՐԵԱՆԻ

(Ա. հրատարակութիւն «ՆԱՀԱՏԱԿ ԳՐՈՂՆԵՐՈՒ ԲԱՐԵԿԱՄՆԵՐ»ՈՒ)

Հեղինակին նկարով, գեղատիպ կողքով՝ Մ. Քէպապճեանէ, կենսագրական ամփոփ յառաջաբանով եւ գեղեցիկ տպագրութեամբ։

Գինն է Ֆրանսայի, ֆրանս. գաղութներու եւ Պալքաններու համար 20 ֆր. միւս երկիրները 25 ֆր. կամ 1 տոլար։

Ստանալու համար դիմել «Յառաջ»ի վարչութեան՝ Լ. Գեւոնեանի 235 Fbg. St, Martin, Paris 10e.

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ԱՆԻԷՌ-Պուա-Քոլոնպի Զէյթուն ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Եռագոյն, Վիշապեան եւ Փոթորիկ խումբերը այս Շաբաթ իրիկուն ժամը 9ին, 79 Rue des Chambardsի հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ եւ տարեկան հաշուետուութիւն, բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ՔՐԻՍՏԱՓՈՐ խումբի ընդհ. ժողովը՝ վաղը իրիկուն ժամը 9ին, սովորական հաւաքատեղին։ Ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ։

ԳԱՒԱՌ

ՍԷՆԼՈՒԻ Ալիշանի ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր խումբերը Զաւէն, Կորիւն եւ Նիկոլ Դուման, այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ։

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի մասնաճիւղին դասախօսական ժողովը այս Հինգշաբթի իրիկուն ժամը 9ին Ֆլորիայի մէջ։ Կը խօսի Ե. Տարօնեան, նիւթ ունենալով քաղաքակրթութիւն եւ բարքեր։ Մէկ ժամ սինէմա։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Կը փնտռուի Կարօ Կարապուշեան որ կը բնակէր 20 rue des Feuillants, Marseille. Իմացնել՝ «Յառաջ»ի վարչութեան։

—Կը փնտռեմ եղբայրս Օհաննէս Տէմիրճեան, (Եօզղատի Գարապըյըգ գիւղէն) որ 1917ին կը գտնուէր իր հօր Մկրտիչ Տէմիրճեանի հետ կեսարիա։ Հօրս մահէն վերջ լուր մը չունիմ, իր մասին ստոյգ տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի իմացնել իր եղբօր Մարտիրոս կամ Յովսէփ Տէմիրճեանի, 13, Rue des Dominicains Marseille. Կը խնդրուի արտասահմանի թերթերէն արտատպել։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

օրակարգի ամէնէն կենսական նիւթին, կայսրութեան տնտեսական աղբիւրներու զարգացման եւ շուկաներու համերաշխ գործակցութեան հարցերուն։

Տրուած որոշումները մեծ փոփոխութիւններ կը մտցնեն գաղութներու եւ մայր-երկրի յարաբերութեանց մէջ։ Անցեալ շաբթու արդէն տրուած որոշումներու համաձայն, գաղութներն իրաւունք էին ստացեր իրենք իսկ նշանակելու ընդհանուր կառավարիչները։

Նախորդ օր, վիճաբանութեան դրուած հարցերէն մէկն էր Տօմինիոններու բնակիչներուն ազգութեան ճշդումը։ Պատերազմէն ի վեր, Տօմինիոնները ժընեւի եւ Լահէյի մէջ ստանձնած են միջազգային յանձնառութիւններ, եւ կերպով մը ուրեմն, դարձած են ազգային միութիւններ։ Հարց ծագած է թէ Տօմինիոններու բնակիչները Անգլիացի՞ պիտի նկատուին, թէ Գանատացի, Աւստրալիացի, Նոր-Զելանտացի, եւն, եւ կամ պիտի գտնուի՞ յարմար բառ մը, որ միանգամայն երեւան բերէ անոնց ծագումն ու Անգլիոյ հետ կապը։

Խնդրին լուծումը յանձնուած է իրաւաբանական յանձնախումբին։

## Պրազիլիոյ յեղափոխութիւնը

ՌԻՕ-ՏԸ ԺԱՆԷՅՐՕ, 7 Հոկտեմբեր.— Խորհրդարանը քուէարկեց 250 միլիոն ֆրանքի գումար մը, որ պիտի յատկացուի երկրին ապահովութեան եւ յեղափոխականներու դէմ պաշտպանութեան գործին։ Կառավարութիւնը մտադիր է իր պաշտպանութեան գիծը կազմակերպել Փարանայի եւ Սան-Փաօլոյի միջեւ։

Յեղափոխութիւնը զսպելու համար, հակառակ կառավարութեան ձեռք առած միջոցներուն, հանրապետութեան 21 կառավարութիւններն արդէն ինկած են յեղափոխականներու ձեռքը, որոնք աւելի ուժեղ են թիւով, քան կառավարութեան զօրախումբերը։ Յեղափոխութեան յառաջուն ընթացքին առջեւ, կառավարութիւնը զօրակոչ յայտարարեց եւ 10 դասեր զէնքի տակ առաւ։ Հարիւր հազար մարդ արդէն, անմիջապէս մտան կառավարական գործօն բանակին մէջ, պատրաստ՝ կռուի մտնելու համար։

ՄՈՆԹԷՎԻՏԷՕ, 7 Հոկտեմբեր.— Միայն Ռիօ-կրանտէ-տօ-Սուլի մէջ, ըմբոստներու թիւը հասած է 30,000ի, որոնք լաւ զինուած են։ Ամբողջ երկրին մէջ, ըմբոստներու ընդհ. թիւը կը համրուի 75 80,000։













## Հ. Յ. Դ. ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ

ՎԱԼԱՆՍ.— Այս կիրակի առաւօտ ժամը 9—12 Սինէմա Փալասի մէջ կը խօսին՝ ընկերներ Ա. ԱԲՕԵԱՆ եւ Մ. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ

ՌՕԱՆ.— Կիրակի 12 հոկտ. կէսօրէ վերջ 2.30ին։ Կը խօսի ընկ. ՀՐԱՆՏ ՍԱՄՈՒԷԼ

Ն. Գ. Բ. ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

## ԱՐՁԱԿ ԷՋԵՐ ԵՒ ՀԷՔԵԱԹՆԵՐ

ՌՈՒԲԷՆ ԶԱՐԴԱՐԵԱՆԻ

(Ա. հրատարակութիւն «ՆԱՀԱՏԱԿ ԳՐՈՂՆԵՐՈՒ ԲԱՐԵԿԱՄՆԵՐ»ՈՒ)

Հեղինակին նկարով, գեղատիպ կողքով՝ Մ. Քէպապճեանէ, կենսագրական ամփոփ յառաջաբանով եւ գեղեցիկ տպագրութեամբ։

Գինն է ֆրանսայի, ֆրանս. գաղութներու եւ պալքաններու համար 20 ֆր. միւս երկիրները 25 ֆր. կամ 1 տոլար։

Ստանալու համար դիմել «Յառաջ»ի վարչութեան՝ Լ. Գեւոնեանի 235 Fbg. St, Martin, Paris 10e.

Տպագրութեան յանձնուած է Մելքոն Կիւրճեանի (Հրանդ) «Պանդուխտի նամակներ»ը։

## ՖՐԱՆՍԱԿԱՆ ԴՊՐՈՑՆԵՐՈՒ ՀԱՅ ԱՇԱԿԵՐՏՆԵՐՈՒՆ

ՀՐԱՆՏ-ՍԱՄՈՒԷԼ ԳՐԱՏՈՒՆԸ, դպրոցական վերամուտի առթիւ, նպաստաւոր պայմաններով ֆրանսերէն ամէն տեսակ դասագիրքեր կը հայթայթէ հայ աշակերտերուն։

Գրատան մէջ կան Larousseի, Hachetteի, A. Colinի, A. Michelի եւ ֆրանսական բոլոր մեծ տուներու հրատարակութեանց ճոխ մթերք մը։

Լոյս տեսաւ Larousseի 1931ի բառարանը, գին 34 ֆրանք։ Մասնավճարներով կը հայթայթենք Լարուսի բոլոր հրատարակութիւնները (Larousse du XXe siècle, Larousse Médical, Commercial, Universel եւայլն։

Պահանջուած ամէն գիրք կը հայթայթենք անմիջապէս։

Գաւառի եւ արտասահմանի դպրոցներն ալ կրնան դիմել մեզ Librairie H. Samuel, 51 Rue Monsieur le-Prince, Paris (5). Tél. Danton 88-65, Métro Odéon.

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ՍԱՐՍԷԼ-ԿՈՆԷՍԻ խումբերու վարչութիւններէն, ընկերներ՝ Գումրուեանցէ, Կարօ Երանեանէ եւ Խաչիկ Մկրտիչեանէ կը խնդրուի հանդիպիլ «Յառաջ», այսօր իրիկուն ժամը 8.30ին։

ԶԱՒԱՐԵԱՆ ենթակոմիտէի խումբերը կը հրաւիրուին ընկերական ընդհ. ժողովի, այս կիրակի ժամը 9ին, 39 Rue Jules Gévelot: Կարեւոր օրակարգ։ Ներկայ կ՚ըլլայ Կ. Կ.ի ներկայացուցիչը։

ԱՆԻԷՌ-Պուա-Քոլոնպի Զէյթուն ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Եռագոյն, Վիշապեան եւ Փոթորիկ խումբերը այս Շաբաթ իրիկուն ժամը 9ին, 79 Rue des Chambardsի հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ եւ տարեկան հաշուետուութիւն, բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

ԱԼՖՈՐՎԻԼԻ Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները այս շաբաթ իրիկուն ժամը 8.30ին ընկ. Լ. Զօրմիսեանի բնակարանը։ Ներկայ պիտի ըլլայ Կ. Կոմիտէի ներկայացուցիչը։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է։

ԳԱՒԱՌ

ՍԷՆԼՈՒԻ Ակնունի ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր խումբերը Զաւէն, Կորիւն եւ Նիկոլ Դուման, այս Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ։

ԼԻՈՆԻ Պատ. միութեան գրախօսական երեկոն այսօր իրիկուն ժամը 8ին Գրադարանի սրահը։ Նիւթ՝ «Րաֆֆիի կեանքը եւ գործունէութիւնը»։ Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները։

## ՅՈՒՇԱՏԵՏՐ

Զ. Ե. Ո. Միութեան Փարիզի մասնաճիւղին դասախօսական ժողովը այսօր Հինգշաբթի իրիկուն ժամը 9ին Ֆլորիայի մէջ։ Կը խօսի Ե. Տարօնեան, նիւթ ունենալով Քաղաքակրթութիւն եւ բարքեր։ Մէկ ժամ սինէմա։

Շ. ԳԱՐԱՀԻՍԱՐԻ եւ շրջանի Ռազմիկ Հայր. միութեան ընդհ. ժողովը այս Կիրակի ժամը 2ուկէսին 40 Rue de Bellevilleի սրահը։ Այն հայրենակիցները որոնք մասնաւոր հրաւէր ստացած չեն, կը խնդրուի ներկայ իբր այն նկատել։

ԵՈԶԿԱՏԻ եւ շրջակայքի Ֆրանսայի բոլոր Հայր. միութիւններէն կը խնդրուի իրենց հասցէները շտապօրէն իմացնել Սէն Շամօնի Եոզկատի Հայր. Միութեան։ Խիստ կարեւոր եւ ենթակայ հայրենակցական խնդիրներու շուրջ խորհրդակցելու համար։ Միութեանս հասցէն՝ Թաշճեան Մանուէլ, 16 Rue Présidant Wilson Saint Chamond.













IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS 208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN







կիրարկել ընդհ. զինաթափութեան քաղաքականութիւն մը, միւս պետութեանց հետ «համախորհուրդ գործակցութեամբ»

Համագումարը ընտրեց Աշխատաւորականներու Գործադիր Մարմինը: Տօմինիններու Նախարարը Թոմաս որ կուսակցութեան ամենէն ժողովրդական դէմքերէն մէկն է եւ անդամ էր Գործադիրին, չյաջողեցաւ վերընտրուիլ: Տասներկու աթոռի համար ներկայացեր էին 14 անձեր: Թոմաս թեկնածուներու ցանկին վերջը մնաց 836,000 ձայնով, մինչ իր պաշտօնակիցը՝ ներքին նախարարը ցանկին գլուխը կուգար 2 միլիոն 42,000 ձայնով:

## Դանիա կը զինաթափի

ՔՈՓԷՆՀԱԿ, 10 հոկտ.— Ազգային պաշտպանութեան նախարարը Դանիոյ խորհրդարանին ներկայացուց երկրին ընդհանուր զինաթափութեան վերաբերեալ օրինագիծ մը:

Օրինագիծին համաձայն, արդի զինուորական բանակը պիտի փոխարինուի հսկիչ մարմինով մը, որուն պիւտճէն չպիտի անցնի տարեկան 7 միլիոն քուռոնը: Զօրավարները պիտի ջնջուին ինչպէս նաեւ գնդապետները եւ պիտի ստանան քննիչի տիտղոս: Պիտի ջնջուի նաեւ պատերազմական նաւատորմը, որուն տեղ պիտի կազմուի պետական նաւատորմ մը, բաղկացած ընդամենը 13 թոնօ տարողութեամբ փոքր նաւերէ: Օդանաւերու թիւը որոշուած է 12: Ծովային եւ օդային նաւատորմերու պիւտճէն չպիտի անցնի տարեկան 10 միլիոն քուռոնը:

Կ'ՈՒԶՈՒԻ վարժ ԳՐԱՇԱՐ մը: Դիմել՝ «Յառաջ»ի վարչութեան

# ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՕՐԸ
## ԿԸ ՏՕՆՈՒԻ ՓԱՐԻԶԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Զ. Ե. Ո. ՄԻՈՒԹԵԱՆ

Այս իրիկուն ժամը 9ին Salle de Géographie մէջ, 184 bld. St-Germain

կը նախագահէ Պ. ԵՐՈՒԱՆԴ ՏԷՐ ԱՆԴՐԷԱՍԵԱՆ

կը խօսին ՌՈՒԷՆ, ՕՀԱՆ ԿԱՐՕ

Ողջերձ մը Զ. Ե. Ո. Միութեան կողմէ եւ Ուրֆայի Հայրենակցական միութեան կողմէ:

Գեղարուեստական ճոխ բաժին, մասնակցութեամբ հայ եւ օտար արուեստագէտներու: Օր. Գ. Գարիպեան (երգ), Օր. Ճամպազեան (դաշնակ): Կ'արտասանէ Զ. Գարիպեան:

Mlle A. Clément (pianiste). Mlle Suzanne Huire (Harpist et pianiste), Օր. Ա. Երամեան (ջութակահար), Mr. Sassi (Violoncelliste) կը նուագէ հայկական եւ եւրոպական կտորներ:

Կը մասնակցի նաեւ ՍԻՓԱՆ երգչախումբը, ղեկավարութեամբ Սաքօ Յակոբեանի:



# Հ. Յ. Դ. ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԸ ԿԸ ՏՕՆՈՒԻ

ՎԱԼԱՆՍ.— Վաղը կիրակի առաւօտ ժամը 9—12 Սինէմա Փալասի մէջ կը խօսին՝ ընկերներ Ա. ԱԲՕԵԱՆ եւ Մ. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ

ՌՕԱՆ.— Վաղը կիրակի կէս օրէ վերջ 2.30ին: կը խօսի ընկ. ՀՐԱՆՏ ՍԱՄՈՒԷԼ

ԿԱՐՏԱՆ.— Վաղը կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին կը խօսի՝ Ընկ. Հ. ՍԷՐԷՆԿԻՒԼԵԱՆ

## Հ. Յ. Դ. ԼԻՈՆԻ ԿՈՄԻՏԷՆ ԺՈՂՈՎԻ ԿԸ ՀՐԱՒԻՐԷ

հետեւեալ խումբերը:

ԿԱՅԾԱԿ, այս երկուշաբթի իրիկուն ժամը 8.30ին:
ՎՐԷԺ, » » » »
ԿՈՒԿՈՒՆԵԱՆ, այս Չորեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին:
ՔԵՌԻ, » » » »
ՀԱՄԱԶԱՍՊ, 16 Հոկտ. Հինգշաբթի իրիկուն ժամը 8.30ին:
Ք. Զ. Ա. միացեալ խումբը 17 Հոկտ. Ուրբաթ իրիկուն ժամը 8.30ին:

## ՍԷՆ ԼՈՒԻ ՊԱՏԱՆԵԿԱՆ ՄԻՈՒԹԵԱՆ ԲԱՑՄԱՆ ՀԱՆԴԷՍԸ

Հ. Յ. Դաշնակցութեան Սէն-Լուի Պատանեկան միութեան բացման հանդէսը այս կիրակի ժամը 2.30ին, տեղւոյն «Կիլիկիա» թատերասրահին մէջ:

Բանախօսութիւն, Երգ, արտասանութիւն եւ անակնկալներ. ֆանթէզի եւ ծիծաղաշարժ զաւեշտ մը ՎԵՑՈՒԿԷՍ ՊՈՐՏԷՆ ԺԱՌԱՆԳ ՄՆԱՑԱԾ ՍՆՏՈՒԿԸ: Մուտքը ազատ է

## ԴԵՐԱՍԱՆ Մ. ՄԱՐՈՒԹԵԱՆԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄՆԵՐԸ

ԿՐԸՆՈՊԼԸ.— Վաղը կիրակի ժամը 2.30ին:

կը ներկայացուի՝ ՊԱՆՔ ՕԹՕՄԱՆԻ ԳՐԱՒՈՒՄԸ կամ ՍՈՒԼԹԱՆ ՀԱՄԻՏ

Ն. Գ. Բ. ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

# ԱՐԶԱԿ ԷՋԵՐ ԵՒ ՀԷՔԵԱԹՆԵՐ

ՌՈՒԲԷՆ. ԶԱՐԴԱՐԵԱՆԻ

(Ա. հրատարակութիւն «ՆԱՀԱՏԱԿ ԳՐՈՂՆԵՐՈՒ ԲԱՐԵԿԱՄՆԵՐ»ՈՒ)

Հեղինակին նկարով, գեղատիպ կողքով՝ Մ. Քէպապճեանէ, կենսագրական ամփոփ յառաջաբանով եւ գեղեցիկ տպագրութեամբ:

Գինն է Ֆրանսայի, Ֆրանս. գաղութներու եւ Պալքաններու համար 20 Ֆր. միւս երկիրները 25 Ֆր. կամ 1 տոլար:

Ստանալու համար դիմել «Յառաջ»ի վարչութեան՝ Լ. Գեւոնեանի 235 Fbg. St, Martin, Paris 10e.

Տպագրութեան յանձնուած է Մելքոն Կիւրճեանի (Հրանդ) «Պանդուխտի Նամակներ»ը:

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

ԶԱՒԱՐԵԱՆ ենթակոմիտէի խումբերը կը հրաւիրուին ընկերական ընդհ. ժողովի, վաղը կիրակի ժամը 9ին, 39 Rue Jules Gévelot: կարեւոր օրակարգ: ներկայ կ'ըլլայ կ. կ.ի ներկայացուցիչը:

ԱՆԻԷՌ-Պուա-Քոլոմպի Զէյթուն կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ Եռագոյն, Վիշապեան եւ Փոթորիկ խումբերը այսօր Շաբաթ իրիկուն ժամը 9ին, 79 Rue des Chambardsի հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ եւ տարեկան հաշուետուութիւն, բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

ԱԼՖՈՐՎԻԼԻ Ս. Մինասեան ենթակոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր ընկերները այսօր շաբաթ իրիկուն ժամը 8.30ին ընկ. Լ. Զօրմիսեանի բնակարանը: Ներկայ պիտի ըլլայ Կ. Կոմիտէի ներկայացուցիչը: Բոլոր ընկերներու ներկայութիւնը անհրաժեշտ է:

ԳԱՒԱՌ

ՄԱՐՍԷՅԼԻ Պատանեկան միութեան ընդհ. անդամական ժողովը վաղը կիրակի իրիկուն ժամը 8ին Միութեան Գրադարան ընթերցասրահին մէջ 63 րիւ տը լա րէփիւպլիք: Անդամներու ներկայութիւնը պարտաւորիչ է:

# ՅՈՒՇԱՏԵՏՐ

Շ. ԳԱՐԱՀԻՍԱՐԻ եւ շրջանի Ռազմիկ Հայր. միութեան ընդհ. ժողովը վաղը Կիրակի ժամը 2ուկէսին 40 Rue de Bellevilleի սրահը: Այն հայրենակիցները որոնք մասնաւոր հրաւէր ստացած չեն, կը խնդրուի ներկայ իբր այն նկատել:

ԵՈԶԿԱՏԻ եւ շրջակայքի Ֆրանսայի բոլոր Հայր. միութիւններէն կը խնդրուի իրենց հասցէները շուտափոյթօրէն իմացնել Սէն Շամոնի Եոզկատի Հայր. Միութեան: Խիստ կարեւոր աշխատական խնդիրներու շուրջ խորհրդակցելու համար: Միութեանս հասցէն՝ Թաշճեան Մանուէլ, 16 Rue Président Wilson Saint Chamond.

ՄԱՐՍԷՅԼԻ Բալուի Հայր. Միութեան ընդհ. ժողովը վաղը Կիրակի իրիկուն ժամը 7.30ին 50 Bld. Dugomiee Bar Monumentalի ներքնասրահը: Կը հրաւիրուին անդամագրուած եւ ոչ անդամագրուած հայրենակիցները ինչպէս նաեւ Բալուի Ե. Միութեան լիազօր ներկայացուցիչները: Խիստ կարեւոր օրակարգ:

ՍԵՐԱՖԻՄ Սրապեանէ կը խնդրուի իր հասցէն յայտնել Պ. Mangenի, 10 Place Waldeck Rousseau, Lilas, (Seine).




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. STEPHAN

## Գերման Խորհրդարանին մէջ

Գերման Խորհրդարանի վերջին նիստին մէջ, վարչապետ Պրիւնինկ կարդաց կառավարական յայտարարութիւնը։ Ընթերցումը քանիցս ընդհատուեցաւ հեգնոտ կամ զայրացկոտ ակնարկութիւններով եւ ընդմիջումներով։ Յայտարարութեան առաջին մասին մէջ, վարչապետը յիշեց այն պատճառները որոնց հետեւանքով կառավարութիւնը ստիպուեցաւ մշակել ելմտական նոր օրէնքը, աւելցնելով թէ դահլիճը խստիւ պիտի մերժէ նախագահական հրովարտակներու դէմ ներկայացուած բանաձեւերը։ Վարչապետը յետոյ մեղադրեց գերման դրամատէրները որ ճգնաժամային պահու մը մէջ, զլացան իրենց դրամական օժանդակութիւնը եւ ստիպեցին կառավարութիւնը որ դիմէ օտար փոխառութեան, ապահովելու համար ելմտական հաւասարակշռումը։

Հաստատելէ յետոյ թէ գերման կառավարութիւնը երբեք կողմնակից չպիտի ըլլայ արկածախնդրական քաղաքականութեան մը, վարչապետը անդրադարձաւ հատուցումներու հարցին կանգ առնելով ելմտական ու տնտեսական բարելաւումներու ծրագրին վրայ, ըսաւ թէ գերման արտաքին քաղաքականութեան տեսակէտէն իսկ, տարրական պահանջ մըն է անոր իրականացումը։

Սակայն Գերմանիա յուսախաբումներ ունեցած է։ — Հակառակ համաձայնութեան մեր անկեղծ տրամադրութիւններուն, շարունակեց վարչապետը, մենք ունեցանք պատրանքներ, զորս պէտք է հասկնալ։ Գերման ժողովուրդը եւ մանաւանդ երիտասարդութիւնը յուզուած են անոր համար որ նախ Ուիլսընի 14 կէտերը չյարգուեցան, ատկից զատ, հակառակ կողմը, ներկայիս ալ չի յարգեր Վէրսայլի դաշնագրին այն կէտերը, որոնք ի նպաստ մեզի են։ Գերմանիա պարտադրուեցաւ բռնի զինաթափումի, մինչ ուրիշներ չկատարեցին կամաւոր զինաթափումի իրենց յանձնառութիւնը։ Հակառակ դաշնագրերու, շատ երկիրներ կը շարունակեն սպառազինուիլ։

«Կառավարութիւնը իր բոլոր կարելի միջոցներով, դաշնագրերու սահմանին մէջ, պիտի զարգացնէ ազգային պաշտպանութիւնը, որքան որ թոյլ տայ մեր ելմտական վիճակը։ Պիտի հսկէ նաեւ որ գերման բանակը զերծ մնայ քաղաքական կուսակցութեանց ազդեցութիւններէն»։

Վարչապետին ճառը ծափեր խլեց ռամկավար, ժողովրդավար եւ կեդրոնի կուսակցութիւններէն, մինչ աջը եւ ձախը կ'աղմկէին։

Խորհրդարանը իր այսօրուան նիստին մէջ պիտի վիճաբանի 530 միլիոն մարքի փոխառութեան օրինագծին շուրջ։

⁂ Պերլինի քաղաքական շրջանակները կը զբաղին մեծադործական բանուորներու ընդհ. գործադուլի քաղաքական անդրադարձումներով։ Ընկերվարականները ներկայացուցին բանաձեւ մը, որով կը հրաւիրեն կառավարութիւնը որ պարտադիր չդարձնէ իրաւարարին վճիռը։ Կը յիշուի թէ իրաւարարը արդար գտեր էր օրավարձերուն վրայ հարիւրին 6 կամ 8ի զեղչ մը։

Կը կարծուի թէ ընկերվարականներու այս բանաձեւը պիտի ընդունուի խորհրդարանին կողմէ, որովհետեւ ընկերվարականները, համայնավարներն ու հիդլերեանները պիտի կրնան իրենց քուէները կեդրոնացնել անոր շուրջ։

### 3000 հոգի ձերբակալուած

ՄՈՍԿՈՒԱ, 16 Հոկտ.— Ընդեղէնի վրայ շահադիտութեան ամբաստանութեամբ, Զեկան 3000 անձ ձերբակալեց։









## Հ. Յ. Դ. ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԸ

### ԿԸ ՏՕՆՈՒԻ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

Վաղը կիրակի ժամը 2.30ին Հայոց եկեղեցիի սրահը

15 Rue Bayard

ՊՈՐՏՕ.— Վաղը կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին, «Տաւրոս» ճաշարանին մէջ։ կը խօսի՝ ընկ. Ռուբէն





ՕՐ. ՀԵՐՄԻՆԷ ԳԱՐԱԿԷՕԶԵԱՆ

ԵՒ

Պ. ՄԱՐՏԻԿ ՓԱՓԱԶԵԱՆ

Խմբապետ Հ. Մ. Ը. Մ-ի

ԱՄՈՒՍՆԱՑԱԾ

Վիէն 11 Հոկտ. 1930

## Հ. Յ. Դ.

ՓԱՐԻԶ

Կ. Կ.ը ժողովի կը հրաւիրէ Արղութեան եւ Ջաւարեան ենթակոմիտէներու բոլոր ընկերներն ու ընկերուհիները, վաղը կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին։ 39 Rue Jules Gévelot, Issy-les-Moulineaux։ կարեւոր օրակարգ։

ՓԱՐԻԶԻ կոմիտէն ստիպողաբար ժողովի կը հրաւիրէ Հրազդան խումբի անդամները, այս երեքշաբթի իրիկուն ժամը 8.30-ին ծանօթ հաւաքատեղին։

ՊԱՆԹԷՕ ՔԱՇԱՆԻ Արծիւ խումբի ընկերական ժողովը այսօր շաբաթ իրիկուն ժամը 8.45ին ընկ. Սեդրակ Գարակէօզեանի բնակարանը 19 Rue Ampère, Cachan։

ԳԱՒԱՌ

ՄԱՐՍԷՅԼԻ ընկեր Կարօ խումբի ժողովը վաղը կիրակի իրիկուն ժամը 5ին ընկ. Յովհաննէս Զարոյեանի բնակարանը։ կարեւոր օրակարգ։

ՍԷՆ ՇԱՄՈՆԻ ենթակոմիտէի ժողովը վաղը կիրակի ժամը 2ին, բոլոր ընկերներու ներկայութիւնը կարեւոր է։

ՍԷՆ ԼՈՒԻ (Մարսէյլ) Պատ. միութեան բացման հանդէսը որ յետաձգուած էր օդին աննպաստ ըլլալուն պատճառաւ տեղի կ'ունենայ վաղը կէսօրէ վերջ ժամը 2.30ին տեղւոյն վրայ։

## ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

### ՍՏԱՑԱՆՔ

Փարիզ, Տիկ. Խ.— 140։
Տրակինեան, Ջատ.— 35։
Տրակինեան, Ա. Ա.— 70։
Փոն տը Շէրիւ, Գործ.— 505։
Քրիւազ, Գ. Խ.— 35։
Օպէրվիլ, Վ. Ի.— 50։
Փոն Թ'էվէք, Խ. Ս.— 35։
Սարսէլ, Մ. Ժ.— 70։
Իսի լէ Մուլինօ, Սարգ.— 245։
Քլամառ, Ժ. Ա.— 35։
Քլէռմոն Ֆէրրան, Գ. Թ.— 70։
Շաթու, Բ. Ջ.— 50։
Փարիզ, Մ. Ղ.— 35։
Միլան, Գործ.— 101 լիր. 25 կարգադրեցինք։
Լէ Վան, Մ. Տ.— 70։
Իսի լէ Մուլինօ, Յ. Թ.— 35։
Վառնա, Գործ.— 1 անգլ.։
Քիրմանշահ Նահ. 1 անգլ.։
Մարսէյլ, Յ. Մ.— 25։
Մէօտոն, Ա. Վ.— 35։
Իսի լէ Մուլինօ, Մ. Բ.— 35։
Ռուան, Գործ.— 122.80։
Տէսին, Ջ. Ռ.— 35։
Լապէկիւտ, Մ. Պ.— 100։
Պուքրէշ, Վ. Մ.— 117 ֆր. 30։
Պերլին, Գ. Վ.— 200։
Մարսէյլ, Կ. Թ.— 35։
Մարսէյլ, Գործ.— 980։
Տէսին, Մ. Ճ.— 50։
Սէն Թրոփէզ, Հ. Ջ.— 15։



## ՑՈՒՇԱՏԵՏՐ

Զ. Ե. Ռ. Միութեան Փարիզի մասնաճիւղին ընդհ. ժողովը այսօր Շաբաթ իրիկուն ժամը 9ին Ֆլորիայի մէջ։ կարեւոր օրակարգ։ Կը հրաւիրուին ընկերներն ու համակիրները։

ԱԼՖՈՐՎԻԼԻ Զէնկիլէրցիներու Հայր. Միութեան ընդհ. ժողովը այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին 29 Rue Etienne Dolet.

Հ. Մ. Ը. Մ-ի բոլոր ֆութպոլիստները կը հրաւիրուին ընդհ. ժողովի այս երեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին Gare de l'Estի դէմ Au Tramway de l'Est սրճարանի վերնայարկը։ Ամէն անոնք որ Հ. Մ. Ը. Մ-ի գոյք (կօշիկ, գուլպայ, շապիկ, տափատ) ունին իրենց մօտ, պարտաւոր են միասին բերել։

Ն. Գ. Բ. ժողովը այս երեքշաբթի իրիկուն ժամը 9ին ծանօթ հաւաքատեղին։







IMPRIMERIE - MASSIS -ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN







կիներ, կազմակերպութիւնը որ կը գործէր ի հաշիւ բոլշեւիկներու, կանոնաւոր սպասարկութիւններ ունէր լուսանկարչութեան, անթելով հաղորդակցութեան եւ լրաքաղութեան: Խուզարկութեան ընթացքին, գտնուեցան բազմաթիւ փաստաթուղթեր եւ գողցուած պաշտօնաթուղթերու պատճէններ:

Կազմակերպութիւնը ճիւղեր ունէր Պուքրէշի, Եաշի եւ ուրիշ մեծ քաղաքներու մէջ, ուր տեղական ոստիկանութիւնները մեծապէս նպաստեցին լրտեսներու ձերբակալման: Տեղեկութիւններ քաղելու եւ զանոնք Մոսկուա հաղորդելու նպատակով, լրտեսներու խումբ մը ղրկուած էր այն շրջանը՝ ուր յառաջիկայ շաբթու տեղի պիտի ունենան մեծ ռազմափորձերը, սակայն ժամանակին ձերբակալուած են: Լրտեսները կը գործէին Վիեննայի բոլշեւիկեան կեդրոնի հրամանին տակ եւ անոր միջոցով Մոսկուա կը փոխանցէին իրենց քաղած գաղտնի լուրերը:

Ու նաեւ ներքին Նախարարութեան մէկ զեկոյցը կը յայտնէ թէ սկսած է ձերբակալեալ լրտեսներու հարցաքննութիւնը: Անոնք անհերքելի փաստերու առջեւ, խոստովանութիւններ ըրած են:

Ձերբակալուած են 100է աւելի անձեր:

Լրտեսական այս կազմակերպութեան պետն է Լուտվիկ անունով լիթուանիացի ճարտարագէտ մը, շատ զարգացած, հմուտ զինուորական, տնտեսական եւ քաղաքական գործերու: Ինքն էր որ կը կեդրոնացնէր բոլոր առնուած տեղեկութիւններն ու կը ղեկավարէր կազմակերպութեան անդամները, մինչ իր օգնականը, նոյնպէս ճարտարագէտ և օտարական, կապ կը հաստատէր Լուտվիկի եւ լրտեսներուն միջեւ:

Նկատի առնելով կազմակերպութեան կարեւորութիւնը ռումէն բանակի ընդհ. սպայակոյտի պետը զօր. Սիմոնովիչ, ինքն իսկ պիտի վարէ հարցաքննութիւնները:













## Հ. Յ. Դ. ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԸ

ԱՆԻԷՌ-ՊՈՒԱ ՔՈԼՈՆՄԻ Հ.Յ.Դ. ՋԷՅԹՈՒՆ ԿՈՄԻՏԷԻ ԿՈՂՄԷ

Այս Շաբաթ իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ Պուա-Քոլոմպի Թաղապետարանի սրահին մէջ

Rue des Halles, Bois-Colombes



## Ա. Ե. Հ. Կ. ԽԱՉԻ ՓԱՐԻԶԻ ՄԱՍՆԱՃԻՒՂԻ ԵՐԵԿՈՅԹ - ՊԱՐԱՀԱՆԴԷՍԸ

10 ՅՈՒՆՈՒԱՐ 1931

Կը խնդրուի բոլոր կազմակերպութիւններէն նկատի ունենալ այդ թուականը:










## Հ. Յ. Դ.

ԳԱՒԱՌ

ԼԻՈՆԻ Կայծակ խումբի ժողովը վաղը Դշ. իրիկուն ժամը 8.30ին Հ. Յ. Դ. Գրադարանը: Բոլոր ընկերներուն ներկայութիւնը պարտաւորիչ է: Ներկայանալ անդամատոմսով:

ՄԱՐՍԷՅԼԻ Ռոստոմ ենթակոմիտէն ժողովի կը հրաւիրէ Զարդարեան, Քեռի, Քրիս, Գէորգ Չաւուշ եւ Արմէն Գարօ խումբերը վաղը Դշ. իրիկուն ժամը 8.30ին սովորական հաւաքատեղին: Կարեւոր օրակարգ, Ներկայացուցչական ժողովի առթիւ:

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

— Պրուսայի Օրթա գիւղացի Յակոբ Գարանեան որ Պուլկարիայէն եկած է Լա Սիօթա կը փնտռէ իր հօրեղբօրորդին Արթին Գարանեան որ երկու տարի առաջ կը գտնուէր Լա Սիօթա: Իմացնել՝ Յ. Գարանեանի, 11 Rue Palamideu, La Ciotat (B. du R.), France.

— Կը փնտռեմ Հարամիկ գիւղէն հօրաքրոջս որդին Անդրանիկ Մկրտիչեան: Իմացնել Ենովք Մալօեանի, Dovista, Serès, Grèce.

— Զարսանճաքցի Միսաք Աւետիսեան կը փնտռէ իր եղբայրը Սեդրաք Աւետիսեան որ 1926ին կը գտնուէր Մարսէյլ: Իմացնել «Յառաջ»ի կամ ուղղակի իրեն՝ Missak Avedissian. Dovista, Serès, Grèce.

— (Սեբաստիոյ Տէրինտէ գիւղացի Ալիքսան Ալիքսանեան կը փնտռէ իր մօրաքրոջորդիները Գէորգ եւ Սողոմոն Չոլաքեանները: 1915ի տեղահանութեան ժամանակ ղրկուած են Մուսուլ, Մալաթիոյ ճանապարհով: Կը կարծուի թէ այժմ կը գտնուին այդ շրջանները: Առաջին անգամ ստոյգ լուր տուողին 1000 ֆր. նուէր իւրաքանչիւր անձի համար: Իմացնել Ա. Ալիքսանեանի, 19 Rue de la Tuilerie Quai Pagot, Vienne, Isère, (France).

Կը խնդրուի արտասահմանեան բոլոր թերթերէն արտատպել զայն:

— Կը փնտռուի Գատըգիւղի որբանոցի որբերէն Գեղամ Մելիքեան: Իմացնել՝ Միհրան Վարդանեանի, 63 Rue Rabelais, Lyon.

— Մարտիրոս Դարբինեան կը փնտռէ իր հօրեղբօրորդիները Մուշեղ եւ կիւրեղ Դարբինեանները: կը կարծուի թէ այժմ կը գտնուին փարիզ: իմացնել Մ. Դարբինեանի, Sarmoussakli, Serès, Grèce.

— Պ. Վահէ Գարագաշեան կ. Պոլսոյ Սամաթիա Թաղէն: իր մայրը Աղաւնի Գարագաշեան 6 ամիսէ ի վեր Ամերիկա եկած է եւ զինքը կը փնառէ: Լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել Վ. Գարագաշեանի, 302 Duoglas Ave. Prov. R. D. U. S. A.

— Կը փնտռուի բնիկ Ուրֆացի կարապետ ինկիլիզեան, հօր անունն Մկրտիչ, մօր անունն Մարիամ: կարապետ 5 տարիէ իվեր կը գտնուէր Մարսէյլ: 9 ամիս է որ, իր քեռին՝ Պ. Վարդան Առաքելեան (Տէր Զօր) եւ իր քոյրը, Ովսաննա ինկիլիզեան (Նասիպէ) նամակ չեն ստացած իրմէ: իր վերջին հասցէն եղած է. Englisian Garabed 35 Rue Blaise Pascal, Tours, Indre a Loire, France. իմացնել Յառաջի միջոցաւ Missak Sissérianի, B. P. 35 Dêr Zor (Syrie).

— Գոնեայ էրէյլիցի Գէորգ Մակարեան կը փնտռէ իր քոյրը այրի տիկին Մարիձայ Մակարեան որ 3 տարի առաջ կը գտնուէր Քորֆու: իմացնել «Հորիզոն»ի միջոցաւ Kevork Magarian Village Vezuico Serès, Grèce.

— Սինոպի Ալթուն օղլու գիւղէն Վահան Այվազեան կը փնտռէ իր եղբայրը Լեւոն Այվազեանը: Լուր առնուած է թէ կը գտնուի Նիւ Եորք: իմացնել Հորիզոնի միջոցաւ, Vahan Ayvazian, Village Vezniko, (Serès), Grece.

— Բալուի Արմուձայ գիւղէն Միսաք Մարկոսեան կը փնտռէ իր մայրը Պէկզատէ Մարկոսեան 4 ամիս առաջ կը գտնուէր Մարսէյլ, իր փեսային Աստուր Մանուկեանի քով: իմացնել Հորիզոնի միջոցաւ Missag Margossianի, Village Vezniko (Serès), Grece.

— կը փնտռուի Ռոտոսթոցի ժիրայր Չէվիկեան: կը կարծուի այժմ կը գտնուի իսկէնտէրուն իմացնել իր եղբօր Հմայակ Չէվիկեանի, Vezniko, Serès, Goèce.


















IMPRIMERIE - MASSIS-ÉDITION 208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN

Ջոհերուն թաղումը պիտի կատարուի այսօր։ Գալով աղէտին պատճառներուն, տակաւին որեւէ պաշտօնական զեկոյց չէ հրատարակուած։ Պէտք է սպասել որ մասնագէտները վերջացնեն իրենց քննութիւնները։ Սակայն արդէն, կ'եզրակացնեն թէ պայթումը տեղի ունեցած է ոչ թէ հանքին խորը, այլ մակերեսը եւ թէ հանքագործներու մեծ մասը շնչահեղձ եղած են թունաւոր կազերով։ Կ'ըսուի թէ պայթումի պահուն երկու վակոն ուժանակ կը գտնուէր փոխադրութեան գիծերուն վրայ։ Յայտնի ալ չէ թէ ի՞նչ բանի պիտի գործածուէին անոնք։ Այդ ուժանակներու պայթումն է որ ծանրացուցած է աղէտը։

⁂ Ջոհերու թաղման օրը, այս օր, 50.000 գործաւորներ, որոշուած է որ ընդհ. գործադուլ յայտարարեն։ Գործարաններու աշխատաւորներն եւս պիտի միանան բանթողներուն։ Գերմանիոյ ամէն կողմերէն, բանուորական կազմակերպութիւնները ներկայացուցիչներ նշանակած են, մասնակցելու համար թաղման արարողութիւններուն։



















# Հ. Յ. Դ. ՔԱՌԱՍՆԱՄԵԱԿԸ

## ԱՆԻԷՌ-ՊՈՒԱ ՔՈԼՈՆՊԻ Հ.Յ.Դ. ՁԷՅԹՈՒՆ ԿՈՄԻՏԷԻ ԿՈՂՄԷ

*Այս իրիկուն ժամը 8.30էն մինչեւ առաւօտ Պուա-Քոլոնպի թաղապետարանի սրահին մէջ*

Rue des Halles, Bois-Colombes

կը նախագահէ Ընկ. ԳԱՌՆԻԿ. ՅՈՎՀԱՆՆԷՍԵԱՆ

կը խօսին ընկերներ ԳԻՒԼԽԱՆՏԱՆԵԱՆ և Մ. ԳՈՒՅՈՒՄՃԵԱՆ

Գեղարուեստական ճոխ բաժնին կը մասնակցին ՍԻՓԱՆ երգչախումբը եւ ԵՓՐԱՏ նուագախումբը։ Երգ, արտասանութիւն եւ զանազան անակնկալներ եւայլն։ Ընտիր ճաշպանտ։

Հաղորդակցութիւն.—St. Lazareէն 45 Porte կամ Place Clichyէն 40 թիւ թռամուէյ իջնել Place Bourguignon եւ 5 վայրկեանը անգամ մը շոգեկառք կար Սէն Լազարէն իջնել կառ. Պուա Քոլոնպ։

*ԱԼՖՈՐՎԻԼ.— Այսօր Շաբաթ իրիկուն ժամը 9ին*

29 Rue Etienne Dolet

*կը նախագահէ՝ Ընկ. Լ. ԶՈՐՄԻՍԵԱՆ*

*կը խօսի Տիկ. ՀԵԼԷՆ ԲԻՒԶԱՆԴ*

*Երգ, արտասանութիւն եւ անակնկալներ*

# Հ. Յ. Դ. ՄԱՐՍԷՅԼԻ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՑՉԱԿԱՆ

## ԺՈՂՈՎԸ ՅԵՏԱՁԳՈՒԱԾ Է ՆՈՅԵՄԲԵՐ 1ԻՆ

Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԵԱՆ ԼԻՈՆԻ ԿՈՄԻՏԷՆ ՍՏԻՊՈՂԱԲԱՐ *ժողովի կը հրաւիրէ Լիոնի եւ Վօան—Վըլէնի ընկերները վաղը կիրակի առաւօտ ժամը 9ին Գ. թաղապետարանի Գրադարանին մէջ։ Ներկայ կ'ըլլայ ընկ. Ա. Ջամալեան։*







# ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏՐԱՄԱԹԻՔ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲ

7ՐԴ ՏԱՐԻ ՂԵԿԱՎԱՐ Տ. ՆՇԱՆԵԱՆ 117ՐԴ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

Թատրոն Albert Ier 64 rue du Rocher Paris, Վաղը Կիրակի գիշեր ժամը 8.30ին

## ՀԱՅԿԱԿԱՆ ՄԵԾ ԵՐԵԿՈՅԹ

*Փարիզի մէջ առաջին անգամ ըլլալով կը ներկայացուի ՏԻԳՐԱՆ ԿԱՄՍԱՐԱԿԱՆԻ «ՎԱՐԺԱՊԵՏԻՆ ԱՂՋԻԿԸ» վէպէն առնուած*

# ՎԱՐԺԱՊԵՏԻՆ ԱՂՋԻԿԸ

*ՊՈԼՍԱՀԱՅ ԿԵԱՆՔԷ ԲԱՐՈՅԱԿԻՑ ՏՐԱՄ 5 ԱՐԱՐ*

ԿԸ ՄԱՍՆԱԿՑԻՆ ՓԱՐԻԶԱՀԱՅ ԲԵՄԻ ԳԼԽԱՒՈՐ ՈՒԺԵՐԸ ԳԻՆԵՐԸ ՍՈՎՈՐԱԿԱՆ

ՏՈՄՍԵՐԸ ԿԸ ԾԱԽՈՒԻՆ ՍՈՎՈՐԱԿԱՆ ՎԱՅՐԵՐԸ

*ՄԱՆՐԱՄԱՍՆՈՒԹԵԱՆՑ ՀԱՄԱՐ ՓՆՏՌԵՑԷՔ ՅԱՅՏԱԳԻՐԸ*

տոմսերը կը ծախուին Restaurant Floria 61 Rue Mr. le Prince, Restaurant Carlo, 32 Rue St. Lazare եւ Hrand-Samuelի գրատունը 51 Rue Monsieur le Prince. իսկ ներկայացման օրը ցերեկէ վերջ ժամը 2էն սկսեալ թատրոնէն կիշէն։

"ՇԱՆԹ" ԳՈՐԾԱԿԱԼՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ ԼՈՅՍ ՏԵՍԱՒ

# ԼԵՌՆԵՐ ԵՒ ԱՐՈՒԵՍՏ

ՏԱՐԵԳՐՔԻ Ա. ՏԱՐԻՆ 1931

*Մեծադիր, պատկերազարդ եւ ճոխ բովանդակութեամբ*

*Վարչութիւն՝ Վ. Ռ. ԹԱԳԻՒՈՐԵԱՆ*

*Խմբագրութիւն՝ Մ. եւ Մ. ՊԱՐՍԱՄԵԱՆ*

*Տարեգրքին իրենց մասնակցութիւնը բերած են ժամանակակից ծանօթ գրագէտներ։*

*Գինը՝ Ֆրանսա, Սուրիա, Պալքաններ եւ Թուրքիա 40 ֆրանք. Ամերիկա, Անգլիա, Եգիպտոս եւ Պարսկաստան 2 տոլար։*

*Ապսպրանքները բացարձակապէս կանխիկ։*

*Դիմել ընդհանուր հասցէին,* «Chanth», Arts et Lettres, 94 rue Lafayette, Paris (10e). *կամ* L. Kévonianի, 235 Fbg. St. Martin, Paris (10e).

ՕՐ. ՀԵՐԱՆՈՅՇ ԱՅՎԱԶԵԱՆ

ԵՒ

Պ. ԿԱՅԾԱԿ ՏԷՐ ԽԱՉԱՏՈՒՐԵԱՆ

*ԱՄՈՒՍՆԱՑԱԾ*

Մարսէյլ 18 Հոկտ. 1930

## Հ. Յ. Դ.

*ՓԱՐԻԶ*

*ԱՂԲԻՒՐ Սերոբ խումբի ժողովը այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին ծանօթ հաւաքատեղին։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է,*

*ՊԷԼՎԻԼԻ Ռոստոմ խումբի ժողովը վաղը Կիրակի առաւօտ ժամը 10.30ին Ռոստոմի սրահը։ Խիստ կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ։*

*ՍԱՐՍԷԼԻ Հրայր խումբի ժողովը այսօր Շաբաթ իրիկուն Ընկեր Օ. Աւետիսեանի բնակարանը 16 Րիւ Պօսէժուր։ Կարեւոր օրակարգ։ Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է։ Միասին բերել անդամատետրերը անպայման։*

*ԿԸ ԽՆԴՐՈՒԻ Խաչիկ Մկրտիչեանէ եւ Առնաւիլէն Կոնէօէն ընկ. Արփիարէն ներկայ գըտնուիլ անպայմանայսօր Շաբաթ իրիկուն ժամը 7ին, 29 Րիւ Պօսէժուր, Սարսէլ։*

## ՑՈՒՇԱՏԵՏՐ

Ա. Ե. Հ. Կ. Խաչի ընդհ. ժողովը վաղը կիրակի ժամը 2ին, 71 Ave. Kleber։ կարեւոր օրակարգ։ Բոլոր անդամներու եւ անդամուհիներու ներկայութիւնը պարտաւորիչ է։

*Հ. Կ. Խաչի Մարսէյլի մասնաճիւղի ընդհ. ժողովը վաղը Կիրակի ժամը 2.30ին 63 Րիւ տը լա Րէպիւպլիքի սրահին մէջ։ Խիստ կարեւոր օրակարգ։ Բոլոր անդամուհիներուն ներկայութիւնը անհրաժեշտ է։*

*Ն. Գ. Բ. ժողովը այս Երկուշաբթի իրիկուն ժամը 9ին, Փըթիթ Սուրս։*

*ՇԱՎԻԼԻ Երիտասարդաց երկսեռ միութեան անդամները ստիպողաբար ժողովի կը հրաւիրուին այս իրիկուն ծանօթ հաւաքատեղին կարեւոր խնդրոյ մը առթիւ։*



## ՀԱՅ ՍՊԱՆԵՐԸ

Հայ Նախկին Սպաներու ընկերակցութիւնը կը պատրաստուի տալ իր տարեկան երեկոյթը, որ տեղի պիտի ունենայ 15 նոյեմբերին Սալ Ժան-կուժոնի մէջ (8 Rue Jean-Goujon)։ ընկերակցութիւնը պիտի աշխատի, որ երեկոյթը հասութաբեր ըլլայ, որպէսզի կարենայ օգնութիւն հասցնել կարօտ հայ սպաներուն։

## ԹԱՏԵՐԱԿԱՆ ՆԵՐԿԱՅԱՑՈՒՄ

*Շաւի Հաճնոյ Հայր. միութեան կողմէ, վաղը Կիրակի օր Սալ տէ Ֆէթի մէջ։ Կը ներկայացուի՝ Պ. Դուրեանի*

«ՍԵՒ ՀՈՂԵՐԸ»

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Հաճնոյ անկման 10րդ տարեդարձին առթիւ։

*Հաճնոյ Հայր. միութեան նախաձեռնութեամբ տեղի կ'ունենայ հոգեհանգիստ—պատարագ վաղը Կիրակի Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ ի յիշատակ նահատակներու։*








IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant H STEPHAN




